ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺ.

# ԿԱՄՍԱՐԱԿԱՆՆԵՐԸ

## ‘‘ՏԵԱՐՔ ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ,,

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. ՍԱՀԱԿ ԿՈԳԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1926

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺ.

# ԿԱՄՍԱՐԱԿԱՆՆԵՐԸ

## ‘‘ՏԵԱՐՔ ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ,,

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1926

# ԿԱՄՍԱՐԱԿԱՆՆԵՐԸ

## ‘‘ՏԵԱՌՔ ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ,,

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. ՍԱՀԱԿ ԿՈԳԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1926

# ԿԱՄՍԱՐԱԿԱՆՔ

## ՏԵԱՌՔ

## ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ

—

### § 1. Կամսարականներու ծագումը:

Կամսարականներու մասին ի պաշտօնէ ճառող պատմագրութիւն մը մեր ձեռքը հասած չէ դժբախտաբար: Տարակոյս չկայ սակայն, որ գրականութեան սիրահար Կամսարականները Է—Ը. դարուն կը ճանչնային իրենց մեծագործութիւններով ոչ աղքատ անցեալը եւ յանձնած էին անոնց գրաւոր սեւեռումը ժամանակակից գրագէտներու: Ի տես այն պատմական երկերուն, որոնք Կամսարական իշխաններու խրախոյսով ու բարոյական աջակցութեամբ ի գլուխ ելած են, հաւանականութենէ վեր է ցեղային պատմութեան մը գոյութեան վարկածը, եթէ նոյն իսկ պակսէր Յովսիայի՝ "Թաթլոյ եւ Վարոսի„ պատմութեան հեղինակին վկայութիւնը: Թաթլոյ եւ Վարոսի հայոց մանրամասնութիւններ աւանդելէ հրաժարելով՝ գրութեան հեղինակը ընթերցողները կ՚առաքէ

տոհմային պաշտօնական պատմութեան մը, որմէ ինքն ալ կ՚օգտուի. «Զորոյ բովանդակ որպիսութիւնն գտանես ի Պատմութեան կամսարականաց» (Ալիշան, Հայապատում, Բ. 425. ԲԶՊ. 1908, էջ 243, 250)։ Այս պատճառաւ է, որ Սերովբէ Վ. Բաջեանի «Ազգաբանութիւն Ալլահվէրտեան տոհմի» գրութիւնը (Հրտ. Հ. Բ. Սարգսեան, ԲԶՊ. 1908, 241, 289, 377, 399) իբր պատմութիւն կամսարականաց՝ ի յառաջագունէ եւ տեսականօրէն կասկած չի ներշնչեր, բայց վերիվերոյ ընթերցում մը կը բաւէ համոզուելու համար, որ անանուն հեղինակը կը դիտէ ոչ թէ կամսարականաց պատմութիւն տալ, այլ Ալլահվէրտեաններու կամսարական ծագումը փաստել պատմականօրէն։ Այդ փաստին արժէքն առ այժմ առ կախ ձգելով՝ չեմ վարանիր հատուկտուր գրուածքը կամսարականներու Պատմութեան մը բոլոր յատկութիւններէն զուրկ հռչակելու։ Հայ միւս պատմագիրներու հաղորդածները ոեւէ նպաստ եւ լուսաւորութիւն չեն ստանար այս պատմութենէն, որ յայտնապէս անոնցմէ եղած քաղուածոյք մըն է պակասաւոր եւ սխալաշատ։

Առ ի չգոյէ ուրեմն տոհմային առանձին պատմութեան՝ կամսարականաց պատմութիւնը ի հարկէ պիտի ունենայ թերի, անծանօթ մասեր, որովհետեւ հայ ընդհանուր պատմութիւն գրողները անցողակի միայն կրնային շօշափել կամսարականները, այսինքն՝ ցորչափ որ անոնք մաս-

նակից էին հայ ընդհանուր ազգային շարժումներուն. իսկ այս՝ հաւասար չափով չէ պատահած միշտ: Արժանահաւատ պատմագրի համբաւ վայելող հայ մատենագիրներու հիման վրայ՝ կարելի է իբր 350—800 կամսարականաց պատմութիւնը գծել առաւել կամ նուազ կատարելութեամբ: Բայց մինչեւ կարեւոր դիրք մը բռնելը իբր նախարարութիւն, ուրեմն մինչեւ Դ. դարու կէսը, ունեցած են անոնք նախնական շրջման մը ծագման, աստիճանական ծաւալման, ուժեղացման: Եւ ահա այն նիւթը՝ որու մասին մթոյ մէջ խարխափելու կը մատնեն զմեզ հայ մատենագիրները:

Միայն Հայոց Պատմութեան Հայրն է որ այս կողմանէ ալ օգնութեան ձեռք կը կարկառէ: Խորենացւոյ ձեռքը սակայն շուտափոյթ բռնելու եւ անոր կառչելու արգելք կ՚ըլլան խիստ ու մանրակրկիտ քննադատութիւններով խախտած իր երբեմն պատկառելի հեղինակութիւնը: Նա յարաբերական մանրամասնութեամբ կը պատմէ կամսարականներու նաեւ ծագումը, Հայաստան գաղթելը, հիւրընկալուիլը եւն: Խորենացի հաւանաբար ժամանակակից էր կամսարականներու պայծառութեան Է—Ը դարուն, եւ ունէր անշուշտ իր անհատական պատճառները ըստ կարելւոյն լոյս սփռելու անոնց անցեալին վրայ եւ զանոնք փառաշուք եւ արքայական ներկայացնելու: Կամսարականները — մեզի անծանօթ պատճառներով — կը վայելէին Պատմահօր հովանաւորութիւնն եւ համա-

կրանքը։ Զարմանալի է այդ, քանի որ իբր զոհերը Բագրատունեան տոհմին եւ ամենամտերիմ բարեկամներն ու զինակիցները Խորենացւոյն ատելի Մամիկոնեանց՝ պէտք էին նաեւ կամսարականք շնորհազուրկ ըլլալ անոր առջեւ, բայց չեն եղած։ Եւ Խորենացւոյ համակրանքը ազդանշան է զգուշութեան՝ անոր պատմածներուն հանդէպ։

Կարելի չէ չընդնշմարել Խորենացւոյ շնորհալի փոյթեռանդութիւնը ժամանակէն յառաջ քանի մը անգամ յեղյեղելու, որ կամսարականք կարենեան սերունդ են, Արշակունեաց եւ Գրիգորի ցեղակից։ Գիրք Բ. իէ. կ՚ըսէ. Արշաւիր, Արտաշէս, Սուրէն, կարէն “համազգիք են... Ապա նշանակեսցուք եւ զժամանակ գալստեան հարցն նոցա ի Հայս, որք են կարենեանք եւ Սուրենեանք, յորմէ Ս. Գրիգոր եւ յորմէ կամսարականք, յորժամ ի շարի կարգին հասանիցեմք ի ժամանակս թագաւորին որ զնոսա ընկալաւ„. — իը. “Եւ ասեն զՍ. Գրիգոր ի Սուրենեանն պահլաւէ, եւ զկամսարականս ի կարենեանն պահլաւէ։ Այլ զայսր գալոյն զորպիսութիւն ի կարգին պատմեսցուք. միայն նշանակելով այժմ առ ընթեր Արտաշիսի զի ծանիցես զազգս զայս մեծ, թէ հաւաստի արիւն Վաղարշակայ են, այս ինքն զարմ Արշակայ Մեծի, եղբօր Վաղարշակայ„. — խբ. Տրդատ հողեր կը նուիրէ “մարդկան ազգին կամսարականաց, որպէս մտերմաց եւ արեան կցորդաց ազգին Արշակունեաց, զոր յիւրում

տեղւոջ պատմեցուք„. — Հգ. Կարենեան պերոզամատ "Նախնի մեծի ազգին Կամսարականաց, զոր յիւրում տեղւոջն պատմեցուք„։

Խորենացւոյ այս տեղիքներուն համեմատ՝ Կամսարականները համապատիւ համացեղ են մէկ կողմանէ Արշակունեաց եւ միւս կողմանէ Գրիգորեան տոհմին, եւ հետեւաբար ունին պարթեւական ծագում։ Բաց աստի Խորենացի կու տայ նաեւ Կամսարականներու ամենանախնի պատմութիւնը, զոր — անտեսելով Խորենացւոյ ընդհանուր ժամանակագրական եւ պատմական սխալները — յառաջ կը բերեմ հոս։

Գ. դարու առաջին քառորդին՝ Պարթեւ Արշակունի հարստութիւնը իր օրհասին կը դիմէր։ Պարթեւական մեծածաւալ պետութեան մէջ՝ հզօր աւատականը Արտաշիր Սասանեան նախկին տիեզերապետութեան մը տենչանքով լեցուած մահու հալուած կու տար Արտաւան Դ.ի (224), եւ իր գահը ապահովելու համար բնաջնջման հրաման կ'արձակէր այն ամէնուն դէմ, որոնք իբր սերնդակից եւ իրաւացի ժառանգ կրնային վրիժառու ըլլալ։ Հայոց Թագաւորը՝ Խոսրով կամ Տրդատ այդ դերը կը ստանձնէ եւ կը յարձակի Պարսկաստան՝ յուսալով իր շուրջ համախմբուած տեսնել Կարենեան, Սուրենեան եւ Ասպահապետի Պահլաւները եւ անոնց գործակցութեամբ վերականգնել եղբայրական գահը։ Սակայն յուսախաբ ետ կը դառնայ, որովհետեւ անոնք խոնարհած էին Սասանականին առջեւ (Խոր.

Բ. Հբ)։ Թէեւ քիչ ետքը Խոսրով ուրախալի լուր կը ստանայ, թէ՝ “ազգական քո Վեհսաճան հանդերձ ցեղիւն իւրով՝ Կարենեան Պահլաւին ոչ հնազանդեաց Արտաշրի, այլ ի կոչ քո դիմեալ գայ առ քեզ„ (անդ) — սակայն ուշ էր արդէն․ Արտաշիր կը յաջողի կոտորել Կարենեան ցեղը, բացի մանուկէ մը՝ Պերոզամատ, որ հակառակ Արտաշրի ճիգերուն ապաւէն կը գտնէ “յաշխարհն Քուշանաց, առ հզօրս ոմանս նորա հասուցանելով ազգայինս„։ Հոն կը դառնայ կ՚ըլլայ քաջ մարտիկ, կը սիրաշահի նոյն իսկ Արտաշիր եւ խնամութեամբ կը կապուի անոր հետ։ Բայց յանձնառու չ՚ըլլար հպատակիլ Արտաշրի որդւոյն՝ Շապուհի, յաջողութեամբ կը պաշտպանէ իր ազատութիւնը, մինչեւ որ “ի մտերմացն Շապհոյ դեղակուր եղեալ մեռանի„ (Բ. ձէ)։ Որդին՝ Կամսար, որ հօրենական պատերազմներուն մէջ “ի շահատակելն իւրում հարկանի յումեմնէ սակրով զգլուխն, եւ վերացուցեալ մասն ինչ յոսկերէ սկաւառակին, բժշկեալ ի դեղոց, պակաս գոլով բոլորութիւն գագաթանն՝ անուանեցաւ Կամսար այնր աղագաւ„ (անդ) — կացութիւնը անտանելի կը գտնէ եւ իր ամբողջ ցեղովը կը դիմէ Հայոց թագաւոր՝ Տրդատ Գ.ի արքունիքը․

Այս է Կամսարականաց սկզբնական պատմութիւնը ըստ Խորենացւոյ (տես նաեւ Չամչ. Ա. 363, 415. Ինճ. Հնախօսութիւնք, Բ. 174—177. Ալիշան, Այր. 428)։

Ի զուր պիտի ըլլար Խորենացւոյ աղբիւրը որոնել: Կրնայ օգտուած ըլլալ աւանդութիւններէ, բայց անտարակոյս է, որ իր գրիչն ալ բարեփոխ կամ չարափոխ մասնակցութիւն ունեցած է: Իբր պատմական կարելի է ընդունիլ կամսարականներու պարթեւ ծագումը եւ անոնց գաղթը Հայաստան՝ Գ. դարու առաջին քառորդին: Խորենացւոյ պատմածները վերաքննելու ուրիշ կռուան չունինք, բայց եթէ լռութիւնը մատենագիրներու հոն՝ ուր չէին կրնար լռել (argumentum e silentio) եւ Խորենացւոյ դիտումնաւոր եղանակը պատմագրելու: Այս հիմերու վրայ անպատմական կը համարիմ Կարենեան ցեղին անճիտումը եւ գաղթումը Գ. դարուն՝ Տրդատ Գ.-ի ժամանակ:

Խորենացւոյ աննախապաշարեալ ընթերցումը Վեհսաճանի, Պերոզամատի մասին, սա տպաւորութիւնը կ՚ընէ վրաս, որ նա 100 տարուան անջրպետ մը (225—325?) լեցնելու եւ Կամսարականներու գաղթն անպատճառ Տրդատ Գ.-ի հետ կապելու համար Արտաշրի ձեռօք անոնց տոհմը ագգատ կ՚ընէ "ջնջելով զամենայն արու՝ յերիտասարդաց մինչեւ ցստընդեայս, բայց ի միոյ տղայոյ": Տոհմին վերականգնումը այդ տղուն զաւակներով՝ կը պահանջէր 100 տարւոյ ժամանակամիջոց մը, եւ ապա կամսարականք կրնային պայծառանալ Տրդատ Գ.-ի մը լոյսին տակ: Իմ կարծիքով Խորենացի տեղափոխած է հոս իրողութիւն մը, որ ըստ Փաւստոսի կը պատահի Արշակ Բ.-ի օրով: Բուզ. Գ.

ժԹ. Արշակ "ազգատ առնէր" կամսարականները, միայն "մանկիկ մի փոքրիկ անուն Սպանդարատ" կը յաջողի զերծանիլ արեան ճապաղիքէն, արդեամբք *Մամիկոնեան Վասակի*, որուն պաշտպանութեան եւ խնամակալութեան տակ նա իր տոհմը կը վերակենդանացնէ։ Խորենացի եւս կը ճանչնայ Արշակի մարդախոշոշ եղբայրադաւ հրամանը եւ գործադրութիւնը (Գ. լա), բայց իր մօտ՝ Սպանդարատ արդէն կանամբի է, հայր երկու որդւոց, եւ ազատութիւնը կը պարտի իր բացակայութեան, եւ ոչ թէ *Մամիկոնեանի* մը մարդասիրական եւ ազգասիրական միջամտութեան։ Խորենացւոյ համար անտանելի էր պատմել, որ կամսարականները՝ "Արշակունեաց արեան կցորդ" այդ մեծ, եւ իրեն այնքան սիրելի ազգը, իրենց գոյութիւնը կը պարտին Մամիկոնեաններուն։ Ուստի պարագայ մը կը լռէ եւ ամբողջ իրողութիւնը տեղափոխ կ'ընէ։ Դէպքերու այս այլայլումը այն օգուտն ալ կ'ընծայէր, որ շատ բնական եղանակաւ կամուրջ մը կը ձգուէր Արտաշիր եւ Տրդատ Գ. իրարմէ բաժնող պարապին վրայ։

Կամսարականներու գաղթը Տրդատ Գ.ի ժամանակ դնելու մղուած կրնայ ըլլալ Խորենացի ոչ միայն իր այս նախասիրած տոհմը հռչակաւոր եւ փայլուն ընծայելու տենչանքէն, այլ նաեւ թերեւս աւանդութեան մը արձագանգէն, որուն մէջ կը լսուէր Տրդատ անունը։ Իսկ Խոր. Տրդատ Գ.է զատ ուրիշ Տրդատի

մը վրայ մտածելու կարողութենէն զուրկ էր թերեւս։ Սակայն եթէ իրապէս Տրդատ Գ.ի ժամանակ պատահած ըլլար այդ դէպքը, բացարձակապէս անմեկնելի պիտի մնար Ագաթանգեղեայ ի սպառ լռութիւնը։ Նա ոչ միայն անտեղեակ է այսպիսի իրողութեան մը, այլ եւ ոչ իսկ Արշարունի, կամսարական անունները կը յիշատակէ։ Եթէ կամսարականք իրապէս այն դիրքն ունեցած ըլլային Տրդատ Գ.ի ժամանակ, "երկրորդ յետ արքայի", զոր կը ներկայացնէ Խորենացի, անպատճառ պիտի երեւային այն նախարարներուն մէջ, որոնք Գրիգորի շքադիր ուղեկիցները կ'ըլլան դէպի Կեսարիա կամ Հռոմ (Ագ. 795/873)։ Թէեւ տոհմերէն ոմանք յիշատակուած են զինուորական կամ քաղաքական տիտղոսով, որ համարժէք էր յատուկ տոհմանուան (թագադիր ասպետ, սպարապետ մեծ, իշխան սպասկապետութեան, մարդպետութեան, մաղխազութեան), որովհետեւ ժառանգական սեպհականութիւն էր այս կամ այն տոհմին, սակայն այս կերպով ալ չեն յիշատակուած կամսարականները։ Անծանօթ է ինքնուրոյն պաշտօն մը կամսարականներու։ Լռութենէ այս փաստը կ'ամրանայ, երբ նկատի առնունք, որ Փաւստոսի մօտ (օ. հ. գ. ժզ) նման հանդիսական ուղեւորութիւններու մասնակից են նաեւ կամսարականները։ Տրդատ անշուշտ պիտի չարտաքսէր իրեն, ‘մտերիմ’, ‘նախարարութեան’, բարձրացուած արիւնակից տոհմը՝ պատուաբեր կրկին ուղեգնացութիւններէ։

Լռութենէ այս փաստը սակայն չափազանց պրկուած եւ իսկոյն ուժասպառ կ'ըլլայ, եթէ հետեւցնենք, որ Կամսարականները նոյն իսկ Տրդատ Գ.ի ժամանակ չէին եկած Հայաստան։ Ագաթանգեղոսի լռութենէն անմիջապէս կը հետեւի միայն սա, որ Կամսարականները չունէին այն աստիճանը, որ կը պահանջուէր նման հանդէսներու մասնակցելու համար։ Տրդատ մը կամ Հայ Արշակունի արքունիքը կրնար անոնց սիրալիր ընդունելութիւն ընել, առանց սակայն բնիկ նախարարութիւնները վիրաւորող արտօնութիւններով օժտելու։ Կամսարականները կրնային արքունիքէն՝ արքունիքի պատկանող հողերով հարստանալ, կրնային յարգ վայելել, բայց չէին կրնար հրապարակային պաշտօնի գլուխ անցնիլ իսկոյն. չէր բաւեր առ այդ լոկ ազգականութեան տիտղոսը, հարկ էր պետական արդիւնք, տոհմային ոյժ։ Այս պայմանները գոյութիւն ունէին Դ. դարու կէսին, իբր մէկուկէս դարու ջանքերէ ետք։

Կամսարականներու պարթեւական ծագման իբր մատնցոյց կը ծառայեն այս տոհմին մէջ կիրարկուած անունները, որոնք առ հասարակ պարթեւական են. Վեհսաճան = *behsāz = որ ունի աղխ պատերազմի (Justi, Ir. Namenbuch, 300). Գերոզամատ = նպ. āmad, եկն նա մեծաւ փառօք (Justi, 250). Բուրզ = աւեստ. bereza = մեծ, բարձր (Justi, 73) Արշաւիր = աւեստ. aršan+vīra (Հիւբշման, Քեր, Ա. էջ 27, թիւ 26)։ Ներսեհ = հին

պրս. Nairyōsaṅha, աւեստ. անուն Նուիրական հրոյ. (Justi, 221). Սպանդարատ = բարեկամ զոհի (Justi, 307. Հիւբշման 74, 170.). Հրահատ = պհլ. frahāt = զգօն (Justi 101. Հիւբշմ. 48, 99.)։ Թէ այս անուններու, մանաւանդ առաջին երեքին, նշանակութիւնը որքան ազդեցութիւն ըրած է Խորենացւոյ երեւակայութեան եւ գրչին վրայ, անհնար է որոշել, բայց կասկած չի վերցներ, որ Կամսարի մասնադէպքը բառական ներշնչում է “Կամսար = փոքրագլուխ„ ժողովրդական ստուգաբանութեամբ, մինչ աւելի գիտական ու հաւանական է “Կամասարա = իշխող ըստ կամի„ մեկնութիւնը (Justi, 155)։ Անունէն պատմութիւն կերտելու այս օրինակը միակը չէ Խորենացւոյ մօտ։

Ամփոփելով՝ այսպէս կը մտածեմ Կամսարականներու սկիզբը։ Ունէին Կարենեան պահլաւ ծագում — պարզ սխալ մըն է, զոր կը գործէ Մխ. Անեցի, 1879, 19, զանոնք Սուրենէ սերեցնելով. “եւ ազգ Կամսարական ի Սուրենեանն պահլաւէ„. Հմմտ. նաեւ Justi, 153։ — Պարթեւ Արշակունի գահին կործանումը (224) սպառնալից փոթորիկ մը կը բերէր արիւնակից տոհմերու վրայ։ Արտաշիր չէր կրնար ապահով համարիլ իր գահը ցորչափ կ'ապրէին եղբայրակից տոհմեր։ Ծայր կու տան հալածանք եւ սպանութիւնք։ Կամսարականները խոյս կու տան դէպի Հայաստան, ուր կը գտնեն ապաստանարան, ոչ միայն իբր ցեղակից, այլ նաեւ իբր նոր տարր մը, որ նպաստաւոր էր արքունիքին։ Վերջնոյս

դիրքը, ոյժն ու ազդեցութիւնը Հայաստանի նման աւատակազմ պետութեան մէջ՝ բացարձակ չէր: Անկախ ինքնագլուխ էին նախարարները, եւ երբեմն թագաւորէն — որ ի կարգին նախարար էր եւ գլուխ նախարարակոյտ աւագանւոյն — աւելի հարուստ եւ զօրաւոր: Երբ նորանոր տոհմեր կը հիւրընկալէր, անոնց աճման ու ծաւալման զարկ կու տար, արքունիքը թիկունք կը շինէր իրեն, իր բանակը կը բազմապատկէր, եւ իր բազուկը կ'ամրապնդէր: Նախարարները, որոնք պարտական էին թագաւորին հետ կուրծք տալ հասարակաց թշնամւոյն, երբեմն կը լքէին զայն, եւ թագաւորը կը մնար շրջապատուած անոնցմով, որոնք արեան ու երախտագիտութեան մասնաւոր կապերով կապուած էին: Ուստի Հայ արքունիքը սիրով հող կու տար եկամուտ տոհմերու: Միւս նախարարներն անտարբեր էին այս քաղաքականութեան եւ օտարամուտ տոհմերուն հանդէպ, ցորչափ չէին բռնաբարուեր իրենց հողերը, իրաւունքներն ու պաշտօնները: Թագաւորը ազատ էր իր հողէն մաս հանելու ուրիշ տոհմերու, եւ ասով անոնց աջակցութիւնը ապահովելու (հմմտ. Խ. Սամուէլեան ԱՄ. ԿԳ. 56. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris 1919, 70): Ահա թէ ինչու մուտ կը շնորհէր Տրդատ Բ. Կամսարականներու եւ անոնց հետ նաեւ ուրիշ ցեղերու, յանուանէ՝ Մամիկոնեանց: Կամսարական եւ Մամիկոնեան տոհմերու միաժամանակ ներգաղթին վարկածը (Aslan, Etudes Hist., 139) կռուան պիտի

ըլլայ մեզի ապա պատմական կարեւոր երեւոյթ մը մեկնելու։ Շատ բնական է, որ եկուոր տոհմերը ամենաեռանդուն նեցուկները եղած ըլլան Տրդատ Բ.ի կամ Խոսրով Ա.ի՝ ընդդէմ Նորահաստատ ոսոխ գահին։

Կամսարականներու ծագման ու սկզբնաւորութեան մասին այսպէս կը մտածեն նաեւ նորագոյն պատմագիրներ։ Գեւորգ Ասլան, անդ, 139 կը գրէ. "Տրդատ Բ.ի թագաւորութեան ժամանակ գտնելու ենք Բակտրիայի — որ օրօրոցն էր նաեւ իր հարստութեան — շատ մը նշանաւոր ընտանիքներու գաղթը, որոնք Հայաստան եկան իրենց կեանքին սպառնացող հալածանքներէ ճողոպրելու համար։ Ասոնց մէջ էին Կամսարականները եւ Մամիկոնեանները, առաջինները արիւնակից արքայական ընտանիքին...։ Տրդատ տուաւ անոնց հիւրընկալութիւն եւ հողեր այն ատեն, երբ հարստութեան փոփոխութիւն մը արեւելեան պետութեան ծոցին մէջ՝ եկաւ վտանգել նոյն իսկ Հայ գահին գոյութիւնը։„ Մեծագիր այս խօսքերէն եւ յաջորդ էջերէն կը հետեւի որ Ասլան՝ Կամսարականներու գաղթը Պարթեւ Արշակունիներու կործանումէն յառաջ կ'ենթադրէ։ Աւելի բնական է սակայն անոր հետ աղերսի մէջ դնել եւ անկէ առթուած համարիլ։ Ասլանի ակնարկած հալածանքներու հեղինակն է Բաբակ։ Մէտ եմ զանոնք Արտաշիրի վերագրել, եւ այս պարագային իմաստ կը ստանայ Ասլանի յաջորդ վարկածը։ Արտաշիրէ հալածուած տոհմերը կը

խմբուին Արտաւանի շուրջ։ Արտաւան կը պարտուի, կը սպաննուի (224) եւ ապա կամսարականք ճարահատ անձնապուրծ կը փախչին Հայաստան։

Այլազգ չի խորհիր նաեւ Laurent, անդ, 69, 70, 96—97։

Անստոյգ կը մնայ միայն թէ Հայոց որ թագաւորին ժամանակ տեղի ունեցած է այն դէպքը։ Ոմանք Ասլանի հետ Տրդատ Բ.ի թագաւորութիւնը կ՚երկարաձգեն մինչեւ 251, մինչ այլք հայ աւանդութեան Խոսրով Ա.ին կը վերագրեն նոյն ժամանակամիջոցը։ Սակայն այդ երկրորդական է մեր հարցին համար։ Էական է պահլաւ կամսարականներու գալուստը Հայաստան՝ Գ. դարու առաջին քառորդին՝ պարթեւ Արշակունեաց կործանումէն ետք։

## § 2. Կամսարական հողերը։

Հայ նախարարական կազմը էապէս հողատիրական աւատական է (հմմտ. Կիւլէսէրեան, ԱՄ. ԾԷ. 225—243. Սամուէլեան, ԱՄ. ԿԳ. 50—79)։ "Նախարար„, "Տանուտէր„ յորջորջումներն այն իրողութեամբ կերտուած են եւ հողատիրութեան մէջ կը գտնեն իրենց հիմը, թէեւ կան պատմագիրներ, որոնք, "Նախարար„ անունը արքայի հետ եղած աղերսին, իսկ "տանուտէր„ սեպհական տոհմին հանդէպ ունեցած դիրքին կը վերագրեն (N. Dolens, Hist. des anc.

Arm. 214)։ Տանուտէրութիւն մը սակայն առանց հողատիրութեան անմտածելի է, իսկ “Նախարար„ հաւանաբար կը բովանդակէ “արար„ = agrar գաղափարը (Միւլէսէրեան, անդ)։ Հողի հետ ունեցած այս սերտ զօդին հետեւութեամբ Նախարարական տոհմը կը կորսնցնէր իր գոյութեան իրաւունքը եւ ծառի նման տերեւաթափ կը չորնար անմիջապէս որ հողազուրկ ըլլար։ Բագրատունիք, Արծրունիք յաջողեցան ամենամեծ ու հզօր տոհմեր ընկճել անոնց հողերը տակաւ գրաւելով։ Տոհմի մը բարգաւաճման առաջին ու էական ազդակն էր հողի ստացուածքը, եւ երբ հայ արքունական տունը հալածական ընտանիքներ կը հիւրընկալէր, պէտք էր որ անոնց կեանքն ու ապագան ապահովէր հողերու հաստատուն հիման վրայ։ Այս նպատակին կրնային գործածուիլ միայն ազատ, այսինքն արքունական հողերը։

Հայ Արշակունիք եթէ կ'ուզէին տեւականօրէն եւ իրապէս փրկել Կամսարականները թշնամւոյն ճիրաններէն հարկ էր որ ընծայէին անոնց հողեր՝ տոհմային իշխանութեան ծաւալման համար, պարտադրելով անոնց տարեկան տուրք եւ ի հարկին՝ բանակ։

Հայաստանի գաւառներէն Արշարունիք եւ Շիրակ ի սկզբանէ եւ գրեթէ անընդհատ Կամսարականներու անուան կից կը յիշատակուին մատենագիրներէ։ Ուրիշ գաւառներու վրայ Կամսարականաց իշխանութիւնը կամ վաղանցուկ է եւ կամ տարակուսական։ Հաւանօրէն Արշա-

րունիք ու Շիրակ եղած են այքունատուր հողերը պահլաւ Նորեկ տոհմին։

### ա. Արշարունիք։

Արշարունիք այն գաւառներէն է, որոնց վրայ՝ տիրապետող տոհմերն իրենց անունը դրոշմած են։ Արշարունիք կամսարականաց անցնելէ յառաջ զուրկ էր իրապէս յատուկ անունէ։ Յովհ. կաթողիկոս 107, 108, Վարդան 132, Երասխաձոր կամ Ձոր Երասխայ տարտամ բացատրութիւնը կը գործածեն։ Զարմանալի է որ իրենց ժամանակ տակաւին կենդանի էր այդ անուանակոչութիւնը, քանի Գ. դարէն ի գործածութեան էր Արշարունիք։ Մ. Խորենացի մանրամասնութիւններ կը հաղորդէ անուանափոխութեան մասին. Բ. ղ. կամսարայ որդւոյն՝ հօրը մահուան վրայ տրտմաթախիծ Արշաւիրի կը պարգեւէ Տրդատ Մեծ "զքաղաքն Երուանդայ եւ զնորին գաւառն մինչեւ ցկատար ձորոյն մեծի, միայն զի ի մտաց նորա հեռացուսցէ զյիշատակ բնիկ աշխարհին որ Պահլաւն կոչի, որպէս զի անվրդով զհաւատսն պահիցէ։ Իսկ Արշաւիր առաւել սիրեալ զգաւառն՝ յիւր անուն կոչէ Արշարունիս, քանզի յառաջ կոչէր Երասխաձոր"։ Միշտ աչքառու կը մնայ սա կէտը, որ Դ.—Է. դար ոչ ոք կը ճանչնայ Երասխաձոր անունը եւ Խորենացիէ ետք միայն երեւան կուգայ եւ այն ցանցառ։ Արդեօք Արշարունիք գաւառանուան կից՝ Երասխաձոր պահա՞ծ էր իր



գոյութիւնը իբր անուն որոշ ձորի մը, որ գերազանցապէս Երասխայ Ձոր էր։

Արշարունիք անունը նախահայկական չէ։ «Ունի» մասնիկը անսայթաք յայտարարը չէ անուան մը նախահայկական ծագման։ Բասմաջեան, Հայ նախարարութիւնները բեւեռաձեւ արձանագրութեանց մէջ, Բանասէր 1902, էջ 240, թիւ 23 կը համադրէ Արշարունիք = էջ 251 Արշարունիք = կամսարական, բայց բեւեռաձեւ նմանօրինակ մը կը պակսի, չի յիշեր նմանապէս Խալաթեանց (Հին Հայաստանի մի քանի աշխարհագրական անունների մասին, որոնք կապ ունին վանեան արձանագրութեանց հետ, անդ, 1900, 281—282)։ Թէ Արշարունիք ու կամսարական նոյն տոհմն են, եւ թէ հետեւաբար Արշարունիք անուան մեկնութիւնը կամսարականաց յատուկ անուններու մէջ որոնելու ենք, կ'ապացուցուի սա իրողութեամբ, որ Արշարունի յորջորջանքով երկու անձ միայն կը յիշուին պատմութեան մէջ եւ ասոնք յայտնապէս կամսարական են։ Ղազար փարպեցւոյ մօտ միեւնոյն Արշաւիրը, Վարդանի գործակիցը, մերթ կամսարական, մերթ Արշարունի կը կոչուի անխտիր (կամսարական՝ Բ, լդ, լե, խե, խէ, ծէ. Գ, Հ. Արշարունի՝ Բ, իգ, լ, լթ, խբ. Եղիշէ, 58, 77, 150. կաղանկատուացի, Բ, ր)։ Խորենացի Գ, կե, կը ճանչնայ 426ին Սպանդարատ Արշարունի մը, Տէր Արշարունեաց եւ հետեւաբար կամսարական։ Սպանդարատ այլուր այնքան ցանցառադէպ էր, որ կամսարական տոհմին սեպ-





հական անուններէն կարելի է համարիլ։ Այս դիտողութիւնը առաւելապէս կ'արժէ նաեւ Արշաւիր անուան համար։ Բացի անուան իրանական կազմութենէն, նա բացարձակապէս յատուկ է կամսարականներու, երկու բացառութեամբ՝ Արշաւիր Արծրունի (Թ. Արծրունի, 41) եւ եղբայր Խուրենայ (անդ, 49, 50, 52, 55)։

Արշարունի՝ Արշաւիր կամսարականէ մը յառաջ բերելով այս երեւոյթները կը մեկնուի։ Սակայն անուններու այս միացումը հակառակութեան կը բախի կամ տարակուսի կ'ենթարկուի Հիւբշմանի կողմանէ։ Նա կը գրէ (ԱՄ. ԾԳ, 313—314). “Արշարունիք անունը իբր տոհմի անուն Արշաւիրէ յառաջ բերելը թէեւ ունի իր հրապոյրը, բայց միտ դնելու է որ Արշաւիր անունէն հարկ էր որ Արշաւրունիք ածանցուէր, հմմտ. սեռ. տր. Արշաւրա, փաւստ. 28. գործ. Արշաւրաւ, փարպ. 210, Արշաւրեան Ածր. 49. Եւ նմանապէս մտադիր ըլլալու է որ Արշարունեաց Արշաւիր իշխանը Արշարունի ցեղէ չէր, այլ Կամսարական տոհմէ։„ Առարկութեան երկրորդ պատմական մասը կը հերքուի վերի դիտողութեամբ, որ Արշարունի անունը սովորութիւն չէ եղած գործածել իբր տոհմանուն, բացի երկու դէպքերէ, որոնց մէջ Արշարունի եւ կամսարական անուններու նոյնութիւնը յայտնի կը տեսնուի։ Երբեմն ես ալ կը միտէի Արշարունի ինքնուրոյն տոհմ մը ընդունիլ իբր տէր Արշարունեաց գաւառին, որ ապա ձուլուած ըլլայ կամսարականներու հետ — արու ժառանգի

մը պակասութեան դէպքին՝ դուստր ժառանգին հետ հողը կ՚անցնէր փեսայի տոհմին. հմմտ. Laurent, 62, — բայց ստիպուեցայ կարծիքս փոխել Արշարունի անկախ տոհմի մը չգոյութեան փաստերուն առջեւ։

Հիւբշմանի հետ կարելի է ենթադրել, որ Խորենացի հնարած ըլլայ Նուիրատուութեան եւ անուանափոխութեան մերձաւոր պարագաները (Հիւբշման, անդ, էջ 314, ծն. 2, ուր սխալ է Տիգրան՝ փխ. Տրդատ), բայց Երշաւիր = Արշարունիք = կամսարական համեմատութիւնը խախտող պատճառ չկայ։ Անուանի լեզուաբանին լեզուագիտական առարկութիւնը իրաւացի է, սակայն Արշաւրունիք ուղիղ ձեւին փոխարէն աւելի դիւրահնչիւն Արշարունիք աւանդուած ըլլալէն կարելի չէ սկզբնական ձեւի մասին դատաստան կտրել։ Յետին դարերու ԱշՈրնիք, ԱրշՕրաց, ԱշՈրնեաց աղաւաղ ձեւերու (տես ԻնՃիՃեան. Ստ. Հ. Հ., էջ 389, Ալիշան, Այր. 54) ՈՕ գրերը միթէ նախնական Աւի մը ի նպաստ չե՞ն վկայեր։ Գ. Փառնակ եւս կը գրէ (Հայ Նախարարութիւնները, Անահիտ, Ժ, 1908, էջ 93)․ Արշարունիք անուան "Ծագումը կամսարականներու Արշաւիր նահապետին անունէն ըլլալը ակներեւ է, սակայն կայ առարկութիւն մը, թէ պէտք էր ըլլալ Արշաւրունիք. ի՞նչ եղած է ւ գիրը։ Առ այս կրնանք ցուցընել համանման կորուստ մը ւ գրի Տաւրուբերան Նահանգին մէջ (չմոռնանք որ բուն ուղիղ անունն է Նահանգին, ինչպէս կը գրէ Եղիշէ "Եպիսկո-

պոս Տարբերունւոյ„, եւ ոչ՝ Տուրուբերան, ինչպէս ունի Խորենացի): Տարուբերան յայտնապէս եղած է "Տաւրուբերան„ է (Տաւրոսի բերան), ինչպէս իրօք ալ Նահանգին դիրքն է, Տաւրոս լեռնաշղթային բերանը: Այս օրինակը ամէն երկբայութիւն կը վերցնէ, եւ Արշարունիք անունին ծագումը Արշաւրէն՝ կը մնայ անվիճելի„: Վիճելի է միայն իր բերած օրինակին արժէքը Հիւբշմանի համոզիչ պատճառաբանութենէն ետք (78—80) առ նուազն կասկածելի է Եղիշէի "Տաւրուբերան„ին հարազատութիւնը հանդէպ Փարպեցւոյ "Տարբերունւոյն„ (Փարպ. Բ, իգ): Իսկ թէ վերջին ձեւին մէջ ալ Տաւրոս բաղկացուցիչ մա՞ս է, դժուարին է պնդել:

Ուրեմն այն գաւառը, զոր իր անունով կը կնքէր կամսարական Արշաւիր մը, կը գտնուէր Երասխայ երկայնութեան վրայ, եւ ինչպէս կը հետեւի մատենագիրներու մօտ՝ անմիջապէս կից յիշուած անուններէ եւ այլեւայլ տեղերու երբեմն այս երբեմն այն գաւառին ընծայուելէն, պաշարուած էր Շիրակ-Վարանդ (հիւսիս), Գաբեղեանք-Ճակատք (հարաւ. դէպի Գաբեղեանք սահմանագլուխ են Կաղզուան եւ Թալթլոյ վանք, Զամչ. Գ, 259, ցանկ 156. դէպի Ճակատք՝ Կողբ), Հաւնունիք (արեւմուտք) եւ Արագածոտն (արեւելք) գաւառներէն: Հարաւային կողմ Երասխէ, իսկ արեւելեան կողմ Ախուրեանէ կ'ակօսուէր: Գաւառին բնական հարստութիւններու մասին Դ.—Ը. դար տեղեկութիւնները սակաւաթիւ են: Վարազաշատ անտառներու գո-

յութեան կը վկայէ Ան. Շիրակացւոյ Թ. Հարցումը. "Որս էր կամսարականացն եւ կալեալ էր երէ բազում„ (Գ. Տէր-Մկրտչեան, էջ 22)։ Ինչ որ ալ ըլլայ Խորենացւոյ պատմական արժէքը, սակայն տարակոյս չկայ որ ի տես այսպիսի անտառներու միայն կրնար գրել Բ, խա. "Տնկէ եւ մայրի մեծ ի հիւսիսոյ կողմանէ գետոյն, եւ որմովք ամրացուցանէ արգելլով ի ներքս այծեմունս, եւ զեղանց եւ զեղջերուաց ազգ, եւ ցիռս եւ վարազս, որք ի բազմութիւն աճեցեալ լցին զանտառն, որովք ուրախանայր թագաւորն յաւուրս որսոց։ Եւ անուանէ զանտառն Ծննդոց։„ Այս խօսքերու հիման վրայ Արշարունեաց մէջ կը դնեն սոյն անտառը՝ Ինճիճեան, անդ, 395. Ալիշան, Այր. 64։ Սակայն կ'երեւայ Զամչեան մտածած է, որ եթէ անտառը Ախուրեանի հիւսիսակողմը գտնուէր, աւելի պատշաճ էր զայն Շիրակի ընծայել, ուստի ցանկին մէջ, էջ 155, կ'ուղղէ "առ Ախուրեան գետով. ի Տայրաւոյ„։ Բայց երբ Խորենացւոյ բոլոր ձեռագիրները ի հիւսիսոյ կը կարդան, չգիտեմ ինչո՞ւ վրիպակ կը հռչակէ զայն Զամչեան։ Անտառներու գոյութեան այս մատենագրական ապացոյցն իր արժէքը չի կորսնցներ, եթէ նոյն իսկ Խալաթեանի հետ (Арм. эп. 224—226) ընդունինք, որ Խոր. Բ, խա՝ նմանողութիւն է Բուզ. Գ.ը, ուստի որ Խորենացի իր Երուանդին վրայ փոխադրած է այն, ինչ որ Բուզանդ Խոսրով Բ.ի մասին կ'աւանդէր։ Խորենացի այն ատեն այդպիսի պատմութիւն մը կրնար յօրինել, երբ գոնէ անտառ-

ներն իրենց չգոյութեամբ իրեն դէմ չաղաղա-
կէին: Իսկ այս է մեզ համար կարեւորը:

Թէ Արշարունեաց գաւառը զարգացման
որ աստիճանին վրայ էր, երբ անցաւ կամսա-
րականներու, անհնար է ճշդել, որովհետեւ հատ-
ուկտիր տեղեկութիւնները, որոնց մէջ երեւան
կու գան Դ.—Ը. դարու կանգուն քաղաքները,
ամրոցներն ու բերդերը, կը պատկանին կամսա-
րական շրջանին: Անոնցմէ ոմանք ի հարկէ ար-
դէն գոյութիւն ունէին: Դ. դարու գլխաւոր ու
բազմամարդ քաղաքներէն էր Երուանդաշատ:
Անշուշտ պատմական անձնաւորութիւն մը քա-
ղաքովս անմահացնել ուզած էր անուն մը, որ բո-
լորովին օտար է կամսարական տոհմին: Խորե-
նացին շինութեան հայող այնպիսի դէպքեր կը
հիւսէ, որոնք պատմական կնիք չունին (Խալա-
թեանց, Арм. эп., 215—219): Մեզի համար
կարեւոր է քաղաքն իբր այսպիսի: Հաւանօրէն
արդէն Դ. դարուն կենդրոնական քաղաք էր եւ
կամսարականներու ոստան: Բուզանդ Դ, ծե,
20.000 Հայ եւ 30.000 Հրեայ բնակչութիւն
կը վերագրէ քաղաքիս. բնականաբար չափա-
զանցութիւն մը, որ սակայն քաղաքին կարեւո-
րութեամբ կը մեկնուի: Զ.—Է. դարուն կամ-
սարականաց ոստանը կը յիշատակուի Մարմէտ
անունով. Ան. Շիրակացի, Հարցումն Է. "Ես ի
Մարմէտ էի, յոստանի կամսարականաց„ (անդ,
էջ 21): Ենթադրելով Մարմէտի եւ Երուանդա-
շատի նոյնութիւնը, յայտնի կ'ըլլայ որ կամսա-
րականք վերականգնած են վերջինս Դ. դարու

կործանումն եօք (Բուզ. Դ, ծե)։ Իսկ Մարմէտ = Երուանդաշատ համեմատութիւնը կը ստուգուի երկուքի աշխարհագրական դիրքէն։

Խոր. Բ, խզ, Մարմէտ կը նոյնացնէ “Երուանդայ քաղաքին ու դաստակերտին„ հետ։ Ի՞նչ հասկնալու է այս բացատրութեամբ, Երուանդաշա՞տ թէ Երուանդակերտ։ Խալաթեանց, անդ, 232, Ալիշան, Այր, 60, ծն. 2. կը համարին, որ Խոր. հոս Մարմէտ եւ Երուանդակերտ կը նոյնացնէ, որովհետեւ Խոր. խզ, դաստակերտ Երուանդայ՝ է Երուանդակերտ, իսկ խթ, ղ. քաղաք Երուանդայ՝ Երուանդաշատ։ Խալաթեանց, էջ 223, դիտել կու տայ. որ Խորենացի ապա իրեն կը հակասէ Գ, լա, գրելով. “քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ„։ Արդէն Ինճիճեան, Ստ. Հ. Հ. 392—394, Մարմէտ՝ Երուանդակերտի հետ կը միացնէր, մինչ Ջամչեան Ա, 338 եւ ապա նաեւ Ալիշան ի նպաստ Երուանդաշատի կարծիք կ'արտայայտեն։ Ալիշանի Այրարատի քարտէսին վրայ տակաւին հին տեսութիւնը նշանակուած է, մինչ Շիրակի աշխարհացոյցն արդէն Մարմէտ = Երուանդաշատ տեսութիւնը կ'արտայայտէ։

Խորենացւոյ համեմատ Երուանդաշատ կը գտնուէր “յարեւմուտս կոյս„ յարաբերութեամբ Արմաւիրի, “ի քարակտուր մի բլուր, զորով պար առեալ Երասխայ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ„. ուրեմն՝ Երասխի եւ Ախուրեանի կազմած անկեան մէջ (Գէտտէր, Հանդ. 1894, 199)։ Արդ Ախուրեան գետի մերձաւորութիւնը հա-

կան պայման մըն է նաեւ Մարմէտի նկատմամբ՝ ըստ Շիրակացւոյ. “Ես ի Մարմէտ էի... եւ երթեալ յեզր գետոյն, որում Ախուրեանն կոչեն„ (անդ, 22)։ Ուստի մերձաւորապէս այն տեղ ուր Ալիշան Այրարատի քարտէսին վրայ Երուանդակերտ նշանակած է, կը գտնուէր Երուանդաշատ = Մարմէտ։

Ասողիկ 47, 48, յայտնապէս գործածելով Խոր. Բ, լթ, տեղս կը կոչէ Երուանդաքար, անշուշտ գիրքէն առնլով (հմմտ. ի “քարակտուր մի բլուր„)։ Դիւլորիէ զայն քաղաքին ամրոցը կը կարծէ եւ հաւանաբար աչքի առջեւ ունի Չամչեան, ցանկ, 148. Երուանդաքար = Միջնաբերդ Երուանդաշատայ։

Մարմէտ շրջապատուած էր հարուստ այգիներով, որոնց յիշատակութիւնը կ'ըլլայ Ժբ. դարու Շիրակայ արձանագրութիւններուն մէջ (Ալիշան, 117, 120, 129, 150. Խալաթեանց, անդ, 232—233 ծն.)։

Արշարունեաց կը պատկանէր նաեւ Երուանդակերտ ըստ Խորենացւոյ Բ, խբ։ Այնպիսի բանաստեղծական նկարագրութիւն մը կ'ընէ նա դաստակերտիս մասին, որ ակամայ կը միտի մարդ ամբողջը երեւակայութեան ծնունդ հռչակել։ Խալաթեանց, անդ, 221—223 ի վեր հանելով Խորենացւոյ այս գլխուն եւ Սեբէոսի ու Փիլոնի միջեւ եղած կախման աղերսը (Համեմատութիւն՝ Բնագիրք, էջ 54) իրապէս Խորենացւոյ գիւտ կը վճռէ։ Երուանդակերտ իբր քաղաք Արշարունեաց ուրիշ ոչ մէկ տեղ կը պատահի եւ Խորե-

նացւոյ քով ուրիշ ոեւէ դեր չունի։ Դիւլորիէ եւս կը մերժէ ինքնուրոյն քաղաքի մը գոյութիւնը. «Կարծողներ կան, թէ Երուանդաշատ ու Երուանդակերտ երկու տարբեր քաղաքներ կը նշանակեն, երասխով իրարմէ բաժնուած (?)։ Սակայն հաւանօրէն միեւնոյն քաղաքն է, որ երկու անուն կը կրէ, մին պարթեւական (ե-շատ), միւսը՝ հայկական կամ պարսկական (ե-կերտ) (Դիւլորիէ Աստղիկ, 86. հայ տպ., էջ 333—334, ծն. 56)։ Երուանդաշատ = հանգիստ, ուրախութիւն Երուանդայ = հ. պ. šigāti = ն. պ. šad. Հիւբշման, 211. իսկ Երուանդակերտ = շինուած Երուանդայ = պահլ. kert։

Ամէն դէպքի մէջ ուրեմն Արշարունեաց մէջ Երուանդակերտ առանձին քաղաքի մը գոյութիւնը Գ.—Ը. դարուն՝ կը յենու Խորենացւոյ հեղինակութեան վրայ։

Նոյնը կ՚արժէ առաւելապէս Երուանդավանի համար։ Խոր. Բ, խղ, Արտաշէս «անուանեաց զհովիտն, ուր ի վերայ դիականցն բանակեցաւն, Մարաց մարգ, եւ զտեղի ճակատուն՝ Երուանդավան, որ կոչի մինչեւ ցայսօր ժամանակի, այս ինքն եթէ յայսմ տեղւոջ վանեաց զԵրուանդ»։ Մեկնութիւնը ուղղակի ծիծաղելի է հանդէպ շատ աւելի հաւանական ու բնական սա ստուգաբանութեան. Երուանդ + աւան (Խալաթեանց, անդ, 231)։ Ինճիճեան, Ստ. Հ. Հ. 394, Խորենացւոյ կը հետեւի հակառակ անոր, որ Երուանդ + աւան ձեռագրական միակ ուղիղ տարբերակն ալ կը ճանչնայ։ Արշարունեաց մէջ

կը դնէ զայն ԻՆՃ., Ալիշան Շիրակի մէջ կը զետեղէ (33) "ի վերնակողմանս Ախուրեան գետոյ" (Այր. 69), մինչդեռ Չամչեան, ցանկ, էջ 148, դիտելով որ "ասի յոմանց թէ այն իցէ տեղին, ուր է այժմ Երեւան քաղաք" զմեզ իրաւամբ դուրս կ'առաջնորդէ Շիրակայ եւ Արշարունեաց սահմաններէն։

Իսկ ‘Մարաց Մարգ’ի կը հանդիպինք Շիրակի արձանագրութիւններու մէջ՝ ԺԳ. դարուն, Կամսարական շրջանէն շատ ետք (Ալիշան, Շիրակ 21, 23, 33. Խալաթեանց, անդ, 233, ծն. 2)։ Արձանագրութիւնները կարծես կը միտին Մարաց մարգը Շիրակայ մէջ, եւ այն՝ Հոռոմոց վանքի շրջակայքը դնելու։

Արշարունեաց մէջ էր *Բագարան* (ԻՆՃ. 394—395. Ալիշան, Այր. 64—69. Սարգսեան, Ո. Դ. 200 յջ.)։ Խորենացի Կոգովիտ գաւառի Բագարանին հետ միասին Երուանդի գործ կը համարի զայն (Բ, լս, լը)։ Թ. դարէն յառաջ այս նշանաւոր տեղւոյն յիշատակութիւն չեմ գտներ մատենագիրներու քով։ Կամսարականներու իշխանութեան ժամանակ սակայն Բագարանի գոյութեան եւ կարեւորութեան ապացոյց է անոր եկեղեցին՝ շինութեան արձանագրութեամբ, որուն ապա կը վերադառնանք։ Երբ Արշարունիք Բագրատունեաց կ'անցնի, շատ յաճախ կը յիշուի Ախուրեան գետի մերձ "Թագաւորանիստ աւանն Բագարան, հանգստարան, շիրիմ քնարանաց Բագրատունեաց" (Յ. Կաթ. 80, 107, 126)։ Անշուշտ ի յիշատակ Կոգովտի Բագարա-

նին՝ Բագրատունիները առանձինն ուշադրութիւն ըրին տեղւոյն զարգացման։ Բագրատունեան շրջանէն են այսօրուայ աւերակներու մեծ մասը (Թորամանեան, Անուրեան, Գ, 1909, թիւ 59)։

Կամսարականները Արշարունեաց գաւառի հետ միասին ժառանգեցին անոր պարծանք՝ անառիկ ամրոցը Արտագերս. «Քաղաք ամուր՝ պարսպօք եւ զաւրութեամբք. Ամրոց՝ եդեալ ի խորութեան լերանց» կը կոչէ Աղ. Մարկ. ԻԷ, 12։ Կը յիշեն նաեւ Ստրաբոն XI. 14, 6. եւ Պտղոմէոս Ե, ԺԳ, 22։ Տարակուսական է, թէ արդեօք Պտղոմէոսի Ἀρταγίγαρτα այս Արտագերսն է, որովհետեւ յառաջ կը բերէ Գորդիւքենի եւ Տիգրանակերտի շարքին մէջ։ Կարեւոր դեր խաղացած էր ամրոցս Կամսարականաց մուտքէն շատ յառաջ, յետ Ք. Ի դար 2—3ին (Վեր. Պատերկ. II, 102. Սեբաստ. Ռուփ. XIX. Տակիտ. II, 3. Հմմտ. Dolens, 156—157)։ Խալաթեանց (Очерк Ист. Арм. 1910, 254) կը կարծէ, որ Կաղզուանի հանդէպ՝ Երասխի ձախ կողմ գտնուող այժմեան Կերսը պահած ըլլայ Արտագերս անուան երկրորդ մասը, եւ Ալիշանի քարտէսին վրայ երկուքն ալ դէն նոյնացուած են։

Արտագերքի դարաւոր գոյութեան այս նախընթաց վկաներուն ի լուր անմոռնելի են Բուզանդայ խօսքերը Դ, ԺԹ. «Թագաւորն Արշակ հրաման տայր յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր»։ Ալիշանի հետ (Այր. 57) ենթադրելու է, որ պարզ նորոգութիւն մըն էր,

զոր կը կատարէր Արշակ՝ Կամսարականներն ան-
ձեռ ընելէ ետք, անշուշտ իբր ոտից կռուան իր
իշխանութեան։ Ինճիճեան, Ստ. Հ. Հ. 396—
397, կրկին Նորոգութիւն կ'ընդունի։ Յ. Ք. 3ին
պարիսպները կը կործանուին. Կամսարականք
վերստին կ'ամրացնեն, այնպէս որ Արշակ «չա-
րակնելով ագահեալ յամուրն Արտագերս»
(Խոր. Գ, լա) տոհմը կը կոտորէ եւ հաւանօրէն
բերդը կ'աւերէ, եւ ապա վերստին կը շինէ։
Խորենացւոյ աւանդած մանրամասնութիւնը շատ
կասկածելի է իր հարազատութեամբ, որով-
հետեւ սպանդի հրամանը ընդհանուր էր եւ ու-
րիշ շարժառիթներէ բղխած (Բուզ. Գ. ժթ)։
Բուզանդի «կարի ամուր էր բերդն այն» խօսքին
մէջ ալ բերդին նախագոյութիւնը կ'ընդնշմարեմ։
Բերդս իր նշանակութիւնը կը պահէ եւ իր ա-
նառիկ դիրքով մեծ ծառայութիւն կը մատու-
ցանէ Դ. դարուն (Բուզ. Դ, ժե. Ամ. Մարկ.,
անդ, Խոր. Գ, լա, լէ), Ե. դարուն (Եղիշէ Գ,
56) եւ Ը. դարուն (Ղեւոնդ, լդ)։ Կամսարական-
ներէ ետք՝ Բագրատունեան շրջանին անունս
կ'անհետանայ։ Անոր փոխարէն յաճախ կը յի-
շուի Կապոյտ բերդ յԵրասխաձոր Յ. Կաթ 128.
Ասող. 185. Ածր. 285. Վարդան 111) յԱշոր-
նեայս (Օրբ. 235), զոր Վարդան. Աշխ. 416,
յայտնապէս կը նոյնացնէ Արտագերքի հետ։
Եղիշէ երկու անգամ կը յիշէ անունս. էջ 57
«զԿապոյտն», զոր ուրիշ ամրոցներու հետ Հայերը
կը խլեն Պարսիկներէ 450ին, եւ էջ 108
«մեծ ամուրն Կապոյտ լերինն»։ Այն կապոյտ

լիոն Ալիշան (Այր. 58) մերձ յԱրտագերս կը դնէ, իսկ Ինճ. Ստ. Հ. Հ. 398, թէեւ երկու կապոյտները նոյն կը համարի, բայց Արտագերքի յետ եղած աղբրսի մասին վճիռ տալու բաւական հիմ չի գտներ: Եղիշէի առաջին կապոյտը, էջ 57, ապահովապէս դուրս է Արշարունիքէ, որովհետեւ պատմագիրը ամուրները կը թուէ կենդրոնէն դէպի ծայրերը ընթանալով: Արտագերք եւ կապոյտ հոն իրարմէ բաժնուած են բոլորովին տարբեր գաւառներու բերդերով, եւ կապոյտի անմիջապէս կից կը գտնենք Որսան՝ Սիւնեաց Ծղուկք գաւառի մէջ (Օրբ. Ա, 52. Բ, 259. Հիւբշմ. ԱՄ. ՏԳ. 361, 395): Իսկ "կապոյտ լերին" (108) մեծ ամուրները կը գտնուին "ի միջոց աշխարհին", այս պատճառաւ կրնանք Արշարունեաց եւ Արտագերքի վրայ մտածել, նկատի առնլով անոնց անտուիկ դիրքը, պաշարման պարագաները եւ միայն մատնութեան հետեւութեամբ գրաւուիլը — պարագաներ որոնք նման օրինակներ են Արտագերքի յ. Բ. 3ի, 370ի պաշարումներուն:

Ղ. Փարպեցի, Գ. ձա. Խուրսայ վրայ խօսելով կը յիշէ "Շիրմանց" գիւղը "յԱրշամունեաց" գաւառին: Մէկ Ձեռագիր կը կարդայ Արշամունեաց: Արշարունեաց է միակ ուղիղ ընթերցուածը: Այս սրբագրութեան (Ինճ. Ստ. Հ. Հ. 402. Հիւբշմ. 391—392. Ալիշան, Այր. 48) նպաստաւոր է սա հանգամանքը, որ Խուրս դայեակ էր Կամսարականներու, եւ Ասող. Գ, ժէ. յայտնապէս կ՚ըսէ. "ի գլուխս

*Արշարունեաց գաւառին, որում Շիրիմն կոչեն*»։

Այսչափ է մեր ստոյգ ծանօթութիւնը Արշարունեաց գաւառի աշխարհագրութեան մասին՝ Դ.—Ը. դար։ Կարելի չէ հաստատել, որ Արշարունեաց՝ *Կալոց գիւղ* (Ասող. Բ, ր), *Նախճրաձոր* (Յ. Կաթ՝ «ի գագաթան Երասխաձորոյ») եւ *Զարեւհան* (Ինճ. 402, Ալ. Այր. 41, Հիւբշմ 345) քաղաքատունեան շրջանին ծագում առած ըլլան, ինչ որ սակայն անտարակոյս է նկատմամբ *Կապուտաքար* (Ասող. Գ, է), *Կամրջաձոր* (անդ), *Վանկոյ կամ Վարդիկ Հայր* (Չամչ. Բ, 824. Գ, 422. Ինճ. 400) վանքերու, *Ագրճկոյս* (Ասող. Բ, ր), *Քառասունք* (անդ) գիւղերու։

Սահմաններու շփոթութեան պատճառաւ Արշարունեաց ընծայուած է երբեմն նաեւ Կաղզուան (Ինճ. 400, Չամչ., ցանկ, 156՝ «քաղաք ի գաւառեղեանս, վասն սահմանակցութեան ընդ Երասխաձորոյ ի պատմութիւնս Հայոց ի բազում տեղիս ասի թէ Կաղզուան իցէ յԵրասխաձոր, եւ ուր ուրեք՝ յԱրշարունիս»․ Հիւբշմ. 2.8. Ալիշան, Այր. 45, 53, 545—547)։ Նկատի չենք առնուր հարկաւ այնպիսի տեղեր, որոնք թէեւ Շիրակի կը պատկանին բայց Արշարունեաց անուամբ կը յիշատակուին. Չամչ., անդ, 136, կը դիտէ. «Գիտելի է, զի որովհետեւ նաեւ գաւառն Շիրակայ տուաւ ազգին Արշարունեաց՝ այսինքն կամսարականաց, այն եւս կոչեցաւ գաւառ Արշարունեաց»։

## Բ. Շիրակ։

Շիրակ էր երկրորդ գաւառը, որ Հայ արքունիքէն անցաւ կամսարականներու։ Թէեւ ասոնք իրենց ոստանը հաստատած էին Արշարունեաց մէջ, սակայն մասնաւոր շինարար հոգածութեան առարկայ կ'ընէին Շիրակը մանաւանդ Գ.—Է. դարերուն։ Բագրատունեան Շիրակի հետ համեմատութեան դնել կարելի չէ հարկաւ, եւ մենք միայն Գ.—Ը. դարերով կը հետաքրքրուինք, ցորքան ժամանակ որ կամսարականներն էին «Տեարք Շիրակայ»։

Շիրակայ Նոր Տէրերն իրենց անունը չեն դրոշմած անոր վրայ։ Այս գաւառը նաեւ իր անունով մեծ հնութիւն ունէր, եւ այնքան յարգի եւ հռչակաւոր էր, որ իր անունը փոխադրուած էր նաեւ հարաւային կողմ Աղձնեաց մէջ՝ իբր Նոր Շիրակ (Սեբէոս, 9) կամ Նոր Շիրական (Բուզ. Գ, Ծ. Ե. Թ.)։ «Շիրակ» անուան ածանցում մը Շարայէ (Խոր. Ա, ծա) նոյն իսկ Ալիշան (Շիր 3) անյարիր կը գտնէ։ Եթէ Շիրակայ ամենաբերրի դաշտերն իրական աղերս մը ունենային գերազանցապէս Որկրամոլ հայազգի պատմական անձնաւորութեան մը հետ, այն ատեն անշուշտ նախադասելի պիտի ըլլար Սահման Շարայի (Խոր. Բ, զ) կամ Շնորհալւոյ Նահանգ Շարայի (Ողբք Եդ. ԻՆՃ. 417) բացատրութիւնը։ Սակայն գաւառիս անունը Հայկական չէ։ Ասիական Սարմատիայի մէջ Σιραχηνοι ազգ կը ճանչնան Ստրաբոն 11, 506. Պոմպ. Մելա. 1, 9, 14, զոր

Պտղոմ. 5, 9, 17, 19 Σιραχο իսկ Տակիտոս Տար. 12, Պլին. 4, 12, 26 Σιρακες ձեւով կը հաղորդեն։ Անոնց երկիրը կը կոչուէր Σιραχηνη, զոր նաեւ Վրկանից մէջ կը դնէ Պտղոմ. 6, 9, 5։ Նոյն անուամբ ազգի եւ երկրի գոյութեան նաեւ Հայաստանի մէջ՝ վկայ են վերոյիշեալ մատենագիրները։ Պտղոմէոս Հայաստանի աշխարհագրութեան մէջ, Ե. ԺԳ. Արաքսի շուրջ գտնուող գաւառներու մէջ կը յիշէ Σιραχηνη՝ «Պարխադրէս լերան երկարութեան»։ Եւ երբ աւելցնեմ որ Ստրաբոնի համեմատ (XI. 2, 5) այս կողմերը Σιρακες անուն ազգ մը կը բնակէր, ոչ ոք պիտի դեդեւի մեր Շիրակն ու Շիրակացիները տեսնել Պտղոմէոսի եւ Ստրաբոնի մօտ (տ. նաեւ Խալ. Арм. Эп. 124)։ Ճիշդ է որ Պտղոմէոսի Սիրակէնէի դիրքը չի համաձայնիր մեր Շիրակ կոչած գաւառին, սակայն այդ դժուարութիւնը կը չքանայ, երբ մտածենք, որ դարերու ընթացքին՝ Հայաստանի մէջ գտնուող ազգերուն տեղափոխութիւնը պատմական անժխտելի իրողութիւն է։

Շիրակ շրջապատուած էր Արշարունիք, Արագածոտն-Նիգ, Աշոցք-Տաշիր եւ Վանանդ գաւառներէն, եւ էր դաշտագետին «արգաւանդ եւ բերրի, յորում գնան ջուրք ոչ սակաւք» (Խոր. Ա, ժբ)։ Գաւառիս աշխարհագրութեան մասին առատ նիւթ կայ, բայց կը հայի բագրատունեան շրջանին, իսկ Դ—Ը. դարու աղբիւրները ամուլ են։ Նոյն իսկ այն ժամանակ, երբ Շիրակայ Տէրերը կարեւոր բաժին կը ստանան Հայոց պատմութեան մէջ, աղբիւրները շատ ուժգօրէն

կը հոսին աշխարհագրութեան նկատմամբ։ Պատճառն է անշուշտ Շիրակի քաղաքական նուազ զարգացումը Դ—Ը դար։ Ագաթանգեղոս Շիրակ անունը չունի։ Բուզանդ յաճախ յառաջ կը բերէ Շիրակ եւ Արշարունիք, բայց մինչ երկրորդին Երուանդաշատը կը յիշատակէ, առաջինի մէջ չի գտներ աչքի զարնող տեղ մը, նշանաւոր իրողութիւն մը, զոր արձանագրէ։

Միակ տեղը, որ Ե. դարու մատենագիրներու մօտ կը պատահի, է Անի։ Ըստ Եղիշէի, 56, անմատոյց այն ամուրներէն է, զորոնք Հայերը Պարսից ձեռքէն ազատեցին նման Գառնիի եւ Արտագերքի։ Այս կ'ըլլար Վարդանեան շրջանին։ Իսկ Վահանի ժամանակ Ատրվշնասպ մարզպանը պարսկախումբ բանակով եւ ուրացողներով կը բանակի «մօտ ի պարիսպ բերդին, որ անուանեալ կոչի Անի», եւ անկէ կը դիմէ դէպի Արտաշատ։ «Յետոյ գրեթէ ոչ եւս յիշի Անի ցաւարտ հարստութեան Բագրատունեաց, բայց հաւանութեան է եթէ չէն էր տեղին, մանաւանդ եթէ ստուգիւ անդ իցէ ծնեալ Անանիայ Համարողի, ի վերջին կէս Է. դարու, որ մերթ Շիրակացի կոչի եւ մերթ Անեցի, եւ առաջին գրագէտ է ընծայեալ մեզ ի Շիրակայ (Ալիշան, Շիր. 37)։ Բասմաջեան (Անիի անցեալն ու ներկան, Բզգ. 1923, էջ 263) կը գրէ. «Քրիստոսի 321 թուականին Հայոց Տրդատ Գ. թագաւորին կողմէ Անի նուէր տրուած է Կամսարականներու»։ Չեմ գիտեր թէ ուրիշ աղբիւր ունեցա՞ծ է պ. յօդուածագիրը բացի Խորենացւոյ

սա խօսքէն Բ, Ղ. Տրդատ «տայ նմա (կամսարայ) ժառանգութիւն ...գգաւառն Շիրակ»: Ըստ մեզ այդ պատահած է մէկ դար յառաջ:

Բագրատունեան ոստանը Անիէ յառաջ՝ էր Շիրակաւան: կամսարական շրջանին՝ կը յիշուի միայն Սեբէոսէ (Բ, իը, լե). Յովհ. կաթ կը ճանչնայ զայն նաեւ երկրորդ անունով մը՝ Շիրակաւան Երազգաւորից (71, 80, 101, 108, 113): Ալիշան վերջին անուան մասին կը խորհի, որ հեթանոսական կոչում եղած եւ քրիստոնէական շրջանի Շիրակաւան յորջորջման տեղի տուած ըլլայ (անդ, 9): Երազգաւորք անուան ստուգաբանութիւնը իրեն համար փաստ է տեղւոյն հնութեան եւ դրից կարեւորութեան: Թէ Երազգաւորք անունն աւելի հին է, կը թուի հաստատել Սամուէլ Անեցի. «Յգ. Շինէ Սմբատ զմեծ քաւարանն պայծառ զարդու յԵրազգաւորս, որ արդ Շիրակաւան կոչի»: Այս դիտողութիւնը սակայն արժէքէ զուրկ է, քանի որ Սեբէոս եւ Յ. կաթ. արդէն կը գործածեն զայն:

Ղեւոնդ, 138 կը ճանչնայ Կումայրի գիւղ ի Շիրակ. Սեբէոս, իբ, կը յիշէ նոյնպէս սոյն գաւառին մէջ դաշտն Ալանից, գիւղն Գնտիկ (Ալ. Շիր. 15, 161), եւ բերդն Երգինայի, որ ապա (Ասող. Գ., Թ) Երգինա ձեւով կը կիրարկուի: Արտիկ լեռը եւ Թալին գիւղը կը գտնենք Անանիա Շիրակացւոյ մօտ (Հարցումն Ի). «Բուն կանգնէր առ ստորոտով լերինն, որում Արտինն կոչեն... պատմեցին նմա ի գեաւղն Թալին» (25).

Թ. Հարցման մէջ կը յիշատակուի Գէն. «Որս էր կամսարականացն ի Գէն» (22)։ Թալին անունը մատենագրութեան մէջ այլուր անծանօթ է ինձ, հակառակ անոր որ ճարտարապետութեան կոթողներու կայան եղած է։ Նոյն իսկ արձանագրութեանց մէջ կը պակսի։ Աւելի բախտաւոր է Տեկոր, որ անգամ մը մատենագրութեան մէջ կը յիշուի (Պատմ. Վարուց Թաթլոյ, Ալիշան, Հայապատ. Ա. 424. Տեկոր՝ «մերձ յարքայանիստն Անի»), անգամ մըն ալ շինութեան արձանագրութեան մէջ (Ալիշան, Շիր. 132. Գ. Յովսէփեան, Շողակաթ, 171)։

‘Մրեն, ալ կը հանդիպի Ներսէհ կամսարականի կանգնած եկեղեցւոյն շինութեան արձանագրութեան մէջ (Գ. Յովսէփեան, 174), մինչդեռ մատենագրութիւնն առաջին անգամ Ժ. դարուն կ'աւանդէ անոր անունը (Յ. կաթ. 46)։ Կամսարականք Ալամանի մէջ եւս կառուցած են եկեղեցի, բայց արձանագրութեան մէջ տեղւոյն անունը չի տեսնուիր (Գ. Յովսէփեան, 173)։ Նախճաւանի մէջ կամսարականի մը շիրիմը կայ արձանագրութեամբ, բայց առանց տեղւոյ անուան։ Շիրակոյ Նախճաւանը հաւանօրէն կը պատահի Խորենացւոյ քով (Գ, լբ), թէեւ Հիւբշման (ԱՄ. ԾԳ, 385) խնդրական կը դատէ զայս։

Հաւանաբար կամսարական շրջանին արդէն գոյութիւն ունէին նաեւ Որմոանք (Յովհ. կաթ. ըստ Չամչ. Սրմոանք). Բաւաց գիւղ (Ասող. Գ, ժա), Բեռնօնք (Ասող. Բ, բ), Ջրեսկ (Յ. կաթ.

62), Ըշտէ (Օրբ. ԺԷ)։ Տես՝ Ինճ. Ստ. Հ. Հ. 429։

Խորենացւոյ (Բ, ձը) համեմատ Տրդատ կամսարականներու կը նուիրէ Շիրակի հետ նաեւ "զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ"։ Տեղւոյս մասին Ջամչեան, ցանկ 146, կը գրէ. "Աւան առ սահմանօք Դունոյ եւ գաւառւոյ, ըստ ոմանց մօտ ի Շիրակ"։ Այս տեղէն էր Յովհ. կաթ.։ Այլուր յիշատակութիւն չկայ աւանիս մասին։

Շիրակայ եւ Արշարունեաց վրայ կամսարականաց հողային տէրութիւնը վերջ կ՚առնու Ը. դարէ յետոյ, երբ Աշոտ Մսակեր կը գնէ զանոնք։ Տոհմիս հողային վիճակը անստոյգ կը դառնայ այնուհետեւ։ Անշուշտ ձեռք բերած էին, եւ կամ այս երկու գաւառները ծախելէ յետոյ ձեռք բերին ասդ անդ հողային կալուածներ։

Բաջեան, ԲՋԳ. 1908, 296, կը հիւսէ պատմութիւն մը այս նկատմամբ, զոր Ալիշան (Շիր. 6) այսպէս կ՚ամփոփէ. "Ըստ նորայայտ եւ ոչ աներկբայ իրիք ցեղաբանութեան կամսարականաց, յամի 789 խոյս տուն կամսարականք Բասենոյ Տեառք Բողբերդի յերեսաց Արաբաց, եւ երթան ի Ծաղագոմ ի բերդն Վարայր վայրի, զոր անդստին ի Դ. դարէ առեալ էին ի պարգեւ ի կայսերէ, ի ժամանակի կոտորածի տոհմին իւրեանց յԱրշակայ, ընդ նմին եւ զՆրաշխատ գիւղ, դայժմեան Խաշուտ ի Թուլթում, եւ երբեմն զօրացեալ տիրէին եւ կողմանց Սալերոյ"՝ Ուրեմն մինչեւ 789 կամ-

սարականք տէր եղած են Բասենի (ԲԶՊ. 1908, 379)։ Այս հաւաստիքին միակ աղբիւրը կը թուի ըլլալ Փարպ. Գ., Ձ. ՁԷ, ինչպէս կը հետեւցնեմ Բաջեանի ակնարկութենէն (ԲԶՊ. 1908, 296)։ Փարպեցի կը պատմէ, որ Վահանեան պատերազմներուն ժամանակ “ի Վարայր վարոյն ի Հոռոմ տան. ի գաւառին որ կոչի Շաղագոմ...„ կը գտնուէր “բազմութիւն այլ մարդկան [մինչ Պարսիկները զՎահան հոն կը կարծէին] ընդ որս դիպեցան եւ կանայք երկուց կամսարականացն տեառնն Շիրակայ Ներսեհի եւ Հրահատայ„։ Կամսարական տիկիններու ներկայութիւնը պատահական էր ուրեմն Շողգոմքի մէջ։ Շապուհ յեղակարծ կը յարձակի, կը գերէ ազնուական տիկինները, եւ “տարեալ զկանայս կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն, անդ թողուր„։ Միթէ այս պատմութիւնը կ՚ընծայէ՞ ոեւէ կռուան Շաղգոմք կամ Բասեն կամսարականաց տէրութեան ենթարկելու։ Եւ ոչ մի։ Բասենի տանուտէրերու մասին դժբախտաբար չեմ գտներ ոեւէ հետք մատենագիրներու քով. բայց անուղղակի ապացոյց մը, որ ան չէր պատկաներ կամսարականաց, կը տեսնեմ Սեբէոսի մօտ, էջ 139։ Պատմագիրը կը թուէ հոն այն իշխանները որոնք 652ին Յունաց հետ էին։ Արդ ասոնց կարգէն են ոչ լոկ ‘Շիրակացիք„, այլ նաեւ ‘Բասենացիք„։ Յայտնի է որ առաջին յորջորջումով կամսարականները նշանակուած են, հետեւաբար աւելորդ պիտի ըլլար յիշատակութիւնը նաեւ

Բասենի, եթէ ասոր ալ տէրերը Կամսարականք ըլլային։

Արդէն առ Նուազն 652ին Բասեն Կամսարականաց տակ չէր, այն դարուն՝ երբ տոհմս իր փայլին ու ոյժին գագաթնակէտին վրայ կը գտնուէր։ Իսկ թէ Բասեն Արշակի տուած կոտորածէն յետոյ կայսերական նուէր եղած է, այդ բոլորովին օդէ քաղուած է։ Բուզ. Գ, իա, չըսեր երբեք թէ կայսրը զԲասեն Կամսարականաց ընծայեց։ Եւ արդէն ի՞նչպէս կարելի էր մտածել նման նուիրատուութիւն մը, քանի որ Բասեն՝ իբր Այրարատեան գաւառ չէր՝ պատկաներ Բիւզանդական Հայաստանի (Հիւբշման, 37), այլ պարսկական բաժին էր։ Վերջապէս թէ Կամսարականները երբ “զօրացեալ տիրէին եւ կողմանց Սպերոյ„ լուռ է պատմութիւնը։

Ալիշան (Այր. 55) հաւանական կը կարծէ, որ նաեւ Բագրեւանդ Կամսարականաց տանուտէրութեան մաս կազմած ըլլայ, գոնէ անցողաբար։ Մինչեւ Ե. դարու կէսը Արշարունիք եւ Բագրեւանդ եկեղեցական մէկ վիճակ կը ձեւացնէին (հմմտ. յօդուածս՝ Եպիսկոպոսք Արշարունեաց եւ Տան Կամսարականացն, ՀԱ. 1924, թիւ 2), թեմական այս միութիւնը քաղաքական միութեան ալ ի նպաստ կը խօսի, վասն զի դժուար է մտածել, որ երկու տարբեր տներ մէկ եպիսկոպոս ունեցած ըլլան։ Կայ սակայն ուրիշ հնարաւորութիւն մը, որ աւելի հրապուրիչ է։ Որքան գիտեմ չկայ նախարարական տոհմ մը, որ ունենայ Տէր Բագրեւանդայ յորջորջումը

մինչեւ Է. դար։ Հաւանաբար արքունական ստացուածք էր եւ ապա անցաւ Մամիկոնեանց։ Արաբական արշաւանքի ժամանակ Բագրեւանդ Մամիկոնեանց էր մինչեւ 852, երբ Բուղա կը գլխատէ Քուրդիկ Մամիկոնեան վերջին իշխանը եւ գաւառը կ'անցնի Բագրատունեաց (Laurent, 96, 120, 122, 127, 217)։ Արքունական ստացուածք եղած միջոցին կրնար դիւրաւ Արշարունեաց հետ մէկ եպիսկոպոս ունենալ, որովհետեւ Արշարունեաց Տէրերը արքունական տոհմ եւ ազգակից էին Հայ գահուն։ Բայց երբ Հայ Արշակունի գահը կը կործանի եւ դարուն մեծագոյն նախարարութիւնը՝ Մամիկոնեան տունը Բագրեւանդայ կը տիրանայ, կը հիմնուի Նոր Թեմ մը՝ Արշարունիքէ անկախ, Եպիսկոպոս Բագրեւանդայ յորջորջանքով։

Բագրեւանդայ վրայ Կամսարական տէրութեան ի նպաստ Ալիշան յառաջ կը բերէ Թաթլոյ եւ Վարոսի վարքը։ Հեղինակը՝ Յովսիա՝ կը յիշատակէ Վարազտիրոց մը Ե. դարու վերջ, եւ Աշոտ մը՝ որդի Սմբատայ՝ Զ. դարու կէսին, իբր Տէր Արշարունեաց եւ Բագրեւանդայ (Հայապատում, Ա, 429)։ Բայց ենթադրելով նոյն իսկ տեղիքիս պատմական արժէքը, պէտք է դիտել, որ Աշոտ յայտնապէս Մամիկոնեան է, իսկ Վարազտիրոցի Կամսարական ըլլալուն ուրիշ ապացոյց չկայ, բայց եթէ անոր Արշարունեաց Տէր կոչուիլը։ Երբ Յովսիա՝ Դաւիթ իշխանին 'Կամսարական, մականունը չի մոռնար աւելցնել, արդեօք իր լռութիւնը Վարազտիրոցի տոհմի մա-

սին՝ մատնցոյց մը չէ՞ անոր կամսարական չըլլալուն: Այս անձինքներու մասին վարը պիտի խօսիմ առանձինն: Ես աւելի հաւանական կը գտնեմ որ Զ. դարուն օտար տոհմ մը տիրած ըլլայ Նաեւ Արշարունեաց կարճ ժամանակով, քան որ կամսարականք իրենց իշխանութիւնը նոյնպէս կարճ ժամանակով տարածած ըլլան Բագրեւանդայ վրայ՝ Զ. դարուն:

## § 3. Կամսարականներու նախարարական աստիճանը:

Թէեւ Հայ նախարարական յօրինուածքը ամէնուն նոյն իրաւունքները, անկախութիւնն ու տէրութիւնը կու տար հանդէպ իւրաքանչիւր նախարարի գաւառին, եւ թէեւ, նկատի չառնելով չափ ու քանակ ոյժի, ամէնքը հաւասար էին իրարու սա տեսակէտէ, որ ամէնքը նոյն աղերսն ունէին առ արքայն, այսինքն պարտական էին տուրք, հաս, մուտ, բաժ, սակ ու բանակ տալ արքունեաց — սակայն հակառակ այս հաւասարութեան՝ իբր Հայաշխարհի վարչական մարմին՝ նոյն պատիւը, դիրքն ու աստիճանը չունէին ամէնքը: Այսպիսի անհաւասարութիւն մը մատնանշող ակնարկութիւններ չեն պակսիր մատենագրութեան մէջ: Ամէնէն ընդհանուր բաժանումն էր, աւագագոյն եւ կրտսերագոյն նախարարք բաժանումը (Եղիշէ 344, 355. Խոր. Բ, կդ՝ կրտսերագոյն ազգք): Սոյն բաժանումը

արտայայտուած է նաեւ Բուզանդի մօտ, Գ. ը, ուր կ'ըսէ. “Գնէր (Խոսրով) օրէնս զի մեծամեծ աւագանին նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն, որ էին բիւրաւորքն եւ հազարաւորքն (հմմտ. Ագաթ. վարը), կայցեն առ արքային եւ ընդ նմա շրջեսցին,,։ Խօսքս կը բովանդակէ այնպիսի գաղափարներ, որոնց հանդէպ ինքնին կը հասկցուին առնչական ստորին եզրները, եթէ կային արքային հետ շրջելու մենաշնորհը վայելող մեծամեծ՝ աւագանին, կային նաեւ անկէ զուրկ փոքրագոյն նախարարներ։ Իսկ այսպիսի բաժանման մը հիմը արքայական քմահաճոյք չէր։ Թ. Արծրունի (Աւ. Այր. 418) նախարարական աստիճանաւորումը յառաջ կը բերէ “կա՛մ ի ծնողաց, կա՛մ ի տեղւոյ, ի գաւառէ, յազգէ, յարիութենէ եւ ի պատահմանէ,,։ Ուրեմն Գաւառ, Ազգ եւ Արիութիւն են այն գլխաւոր ազդակները, որոնցմով նախարարութիւն մը կրտսերագոյն կամ աւագագոյն կը հռչակուէր արքայի կողմանէ։

Ունենալով այս չափանիշը՝ դիւրին է ի յառաջագունէ որոշել, որ Կամսարականք աւագագոյն նախարարութեանց թուէն էին։

Անոնց աւագութեան ի նպաստ կը խօսի նախ՝ Կամսարականներու սերունդը, ‘Ազգ,ը՝ Արծրունեաց բառով։ Շատ բնական էր որ հայ արքունի գահը իր ցեղակից հալածական ընտանիքը չստորնացնէր հայ կրտսերագոյն նախարարութեանց կարգը, այլ տար անոնց աւագութեան աստիճան։ Հայ արքունիքի եւ եղբայրա-

կից ցեղին պատիւն կը պահանջէր որ Կամսա-րականաց աւագութեան աստիճան տրուէր։ Այս կողմանէ համաձայն ենք Խորենացւոյ։ Բայց նա աւելի յառաջ կ'երթայ եւ մանրամասնու-թիւններու խորամուխ կ'ըլլայ, զորոնք վարը պիտի քրքրենք։

Աւագութեան ի նպաստ կը խօսի նաեւ Դիւանը։ Բնականաբար թէեւ դժուար է որո-շել թէ երկրամասին որ յատկութիւնները աւա-գութեան տիտղոս կը ծնանէին, բայց հոս ալ կարելի է չափանիշ առնուլ նախ արքունիքը, որուն հողերը նախապատուութիւն կը վայլէին անշուշտ։ Արդ Կամսարականաց սեպհականու-թիւն կ'ըլլային Երշարունիք ու Շիրակ՝ արքու-նական գաւառները։ Իսկ եթէ գաւառի մը ար-ժէքը անոր պտղաբերութեան մէջ էր, որով նախարարներն ի վիճակի կ'ըլլային արքունական հարկը առաւել կամ նուազ թաթաղուն չափով վճարելու, այն ատեն Կամսարականք դարձեալ իրաւունք կը ստանան աւագութեան։ Անոնց վի-ճակուած հողերուն բերրիութիւնն ու արգա-ւանդութիւնը առածի կարգ անցած էր։

Աւագութեան այս հիմերը բնական էին, իսկ երրորդը՝ Արիութիւնը՝ անձնական արժանիք կ'ենթադրէր։ Արիութիւն, արքունական գա-հուն մատուցուած ծառայութիւններ՝ պատճառ կ'ըլլային, որ արքայն բարձրացնէր այս կամ այն տոհմը։ Թէեւ արքայն կապուած էր այն կար-գերուն, որոնք դարաւոր աւանդութիւններով նուիրագործուած էին եւ անյեղլի իրաւունքը կը

կացուցանէին այս կամ այն ընտանիքին, բայց առաւել կը կարծուէր թագաւորին լոկ քմահաճոյքը: Իսկ բանաւոր վարձատրութիւն կամ պատիժ, բարձրացում կամ ստորնացում եւ կամ նոյն իսկ արտաքսում նախարարական աստիճանէ՝ ըստ արժանիքի կամ ապարժանիքի, դա՝ գահին իրաւունքն էր (N. Dolens, 214—215, Ալիշան, Այր. 416): Անձնական արժանիք եւ պետական վաստակ՝ էին նաեւ գլխաւոր պատճառները աւագութեան մէջ ալ որոշ աստիճան մը սահմանել տալու: Թէ կամսարականները մինչեւ Դ. դարու երկրորդ քառորդը ինչ արդիւնք վաստկած են, չենք գիտեր: Մեզի ծանօթ գործունէութիւնը Դ. դարու երկրորդ քառորդէն ետք՝ երաշխաւորութիւն կու տայ ընդունելու, որ մարտական գերազանց յատկութիւններով եւ արդիւնքներով հռչակ հանած ըլլան նաեւ անցեալին մէջ: Ամենայն իրաւամբ կրնանք ենթադրել, որ անոնք մասնաւորապէս փայլած էին հաւատարմութեամբ դէպի տիրող գահը: Այս կողմանէ ալ աւագութիւնը կամսարականաց համար բնական կը գտնեմ եթէ ոչ Գ. դարուն գոնէ Դ. դարու կէսէն վերջ:

Խնդիրն անորոշ կերպարանք կ՚առնու, եթէ Արիութեան հետ՝ կրտսերութեան կամ աւագութեան իբր ազդակ նկատի առնունք իւրաքանչիւր տոհմի կարողութիւնը բանակ արտադրելու մէջ: Ծանօթ է “Զօրաթիւ Հայախումբ բանակի„ ցանկը, զոր հրատարակած են Շահխաթունեան, Բ, 58, եւ ապա, սրբագրութիւն-

ներով, Ալիշան, Այր. 424: Սոյն ցանկին մէջ կը ներկայացուի զինուորական ոյժը 86 տոհմերու, որոնք միասին 124.000 հոգի կ'արտադրեն, բայց բնականաբար իւրաքանչիւր տոհմ հաւասար չափով մասնակից չէ այդ գումարին: Կամսարականք, որոնք Հիւսիսային զօրաբաժնին մէջ նշանակուած են, կու տան միայն 600 հոգի: Այս թիւը մեզի ոեւէ ծառայութիւն չի մատուցաներ մեր խնդրոյն մէջ, որովհետեւ կ'անգիտանանք թուական այն սահմանագիծը, որմէ վեր կամ վար կը զատուէին աւագ կամ կրտսեր նախարարները, եթէ ընդհանրապէս այդ բաժանումը կախում ունէր զինուորական ոյժէն: Եթէ Գահնամակին խորհուրդ հարցնենք պիտի ստիպուինք ընդունիլ, որ զինուորական ոյժը էական դեր չէր խաղար աւագութեան կամ կրտսերութեան մէջ: Գահնամակի մասին՝ յետոյ:

"Ի յառաջագունէ,, սկզբունքային այս խորհրդածութիւնները կը գտնե՞ն իրենց հաստատութիւնը հայ պատմագիրներու քով:

Ի զուր կը սպասենք, "աւագագոյն„ եւ "կրտսերագոյն„ խորագրերով նախարարական ցանկի: Եղիշէի մասին վարը: Ագաթանգեղոս (795) պատմելով որ Տաժակ կ'ուղեւորին "իշխանք ընտիրք, կուսակալք, կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք,, — կը յիշէ **16** իշխան: Կամսարականները բացակայ են: Իսկ Կոստանդիանոս Մեծին տրուած այցելութեան առթիւ **13** իշխան միայն կը յիշէ յականէ յանուանէ (873), որոնց մէջ Կամսարականք դարձեալ չկան,

բայց պատմագիրը կ՛աւելցնէ՝ "եւ այլ բազում մեծամեծօք„ հաւաքական խօսքը, որով անորոշութեան կը մատնուինք։ Վերը վարկած մը արտայայտած էի, որով կամսարականներու լռութիւնը կը մեկնէի անոնց այն աստիճանը չունենալէն, որուն կը հասնին ապա՝ Դ. դարու կէսէն ետք։ Զգուշութեամբ միայն կը յայտնեմ այս վարկածը, որովհետեւ "եւ այլ բազում մեծամեծօք„ յաւելուածը շատ բան կրնայ բովանդակել։ Բայց կը պնդեմ, որ եթէ կամսարականք "գլխաւորք եւ յոյժ պատուական յետ արքայի„ ըլլային Տրդատ Գ.ի ժամանակ, անոնց անուան զանցառութիւնը բացարձակապէս անմեկնելի եւ անարդարանալի կը մնար։ Անյիշատակ մնալէն ընդհանրապէս աւագ չըլլալը չի հետեւիր, օ. հ. Ագաթ. 873 չի յիշուիր Մարդպետը, թէեւ նա աւագներու շարքէն էր, — բայց կը հետեւի արտակարգ ու բացառիկ դիրքի տէր չըլլալը։ Իսկ Խորենացի այսպիսի դիրքի մէջ կը դնէ զանոնք Տրդատ Գ.ի ժամանակ։

Անժխտելի է որ Բուզանդի պատմութեան մէջ կամսարականք աւագ նախարարութեանց կարգն են։ Բուզ. Գ, ժզ. յառաջ բերելէ վերջ Վասակ Մամիկոնեան, Մեհենդակ Ռշտունի, Անդովկ Սիւնի եւ Արշաւիր կամսարական, զանոնք կը յատկանշէ իբր "մեծք եւ գլխաւորք նահապետք„։ Բուզ. Դ. ը յայտնապէս տարբերութիւն կը դնէ այն նախարարութեանց, զորոնք կը կոչէ "զնահապետս մեծամեծս եւ զտանուտէրս որք գործակալքն էին„ — եւ այն բարձերու

միջեւ, որոնք ստորնագոյն դիրք ունէին, եւ ինչ քանիցս կամսարականները առաջիններու տիտղոսներով կը բնորոշէ։ Սոյն պատմագրին համեմատ անոնք տեղապահները կ'ըլլան Մամիկոնեանց ծանր ու պատասխանատու, բայց նաեւ առաջնապատիւ պաշտօնին՝ սպարապետութեան մէջ (Գ, ժա)․ դիւանագիտական կարեւոր պատգամաւորութիւններ կը ստանձնեն դէպի Բիւզանդիոն (Գ, իա)․ կ'ուղեկցին Փառենի (Գ, ժղ)․ Ներսիսի դէպի Կեսարիա՝ Մարդպետութեան, Ասպարապետութեան, Ծոփաց, Ռշտունեաց. Սիւնեաց աւագ իշխանութիւններու հետ (Գ, դ)։ Այս դէպքերը կ'ենթադրեն կամսարականաց աւագութիւնը, որուն անդրագոյն փաստերը կ'ընձեռեն Փարպեցի, Եղիշէ։ Ասոնք սակայն արդէն կամուրջ մը կը ձեւացնեն՝ աւագութեան ընդհանուր հարցէն՝ մանրամասնութեանց անցնելու։

Հայ աւագագոյն կամ կրտսերագոյն նախարարները ունէին տակաւին ստորաբաժանումներ, պատիւներ ու պաշտօններ։ Նախարարներն իրենց աստիճանին համեմատ կը գրաւէին արքունեաց մէջ առանձնայատուկ կարգ, գահ, բարձ։ Բուզ. Գ, բ, ինն հարիւր բարձ կ'աւանդէ “ի ժամ տաճարին ուրախութեանն բազմականացն կարգելոց,, բացի նահապետներէ եւ տանուտէրերէ։ Մեսրոպ Երէց (Սոփ. Հայկ. Զ, 32—38) չորսհարիւր կ'ըսէ անոնց թիւը. թէեւ միայն 170 յառաջ կը բերէ անունով։ Մեսրոպ Երէց այս դասաւորութիւնը կը վերագրէ Արշակ Բ. Թագաւորին, իսկ Օրբէլեանի (Է) համեմատ

այդ կարգը հրատարակած էր արդէն Տրդատ Մեծ։ Բարձերու կամ գահերու թիւը մեզի համար կարեւորութենէ զուրկ է։ Քանե՞րորդն էր Կամսարականներու բռնած բարձը՝ — ահա զմեզ հետաքրքրող հարցը։ Ամէն դժուարութիւն բարձող եւ բոլոր առարկութիւնները հարթող ստոյգ պատասխանի մը յանգիլ անկարելի է. վստահութիւն ներշնչող արժանահաւատ ցանկերու պակասը եւ գլխաւորաբար հայ բարձերուն յընթացս կրած զանազան փոփոխութիւնները կը ստեղծեն այդ գրեթէ անյաղթելի դժուարութիւնը։ Կը մնայ մեզ առ այժմ տրամադրելի տուեալներու վրայ յեցած՝ հաւանական եզրակացութեամբ գոհանալ։

Հայ պետական կազմին մէջ կային պաշտօններ, որոնց գահագլուխ ապահովուած էր. այսպէս՝ "Չորեքին զաւ̃երէցք տաճարին, որ բդեաշխքն կոչին,, (Ագաթ. 873), ապա՝ Մարդպետը, Հազարապետը, Ասպետը, Սպարապետը, Մաղխազը (Ագաթ. 795, 875) ունէին առաջին բարձերը եւ ըստ այսմ այն տոհմերը, որոնք ժառանգաբար ստացած էին նոյն պաշտօնները (N. Dolens, 217—218. Ալիշան, Այր. 419—425)։ Կամսարականները, որոնց այս պատիւներէն եւ ոչ մին կը պատկանէր, ամէն դէպքի մէջ այս 8—9 գահերէն ետք կու գային, եւ եթէ խորհինք, որ տոհմերու մէջ կային իրենց հնութեամբ եւ ոյժով պատկառելի եւ ազդեցիկ իշխանական տներ, պիտի ստիպուինք երեք չորս գահ եւս դէպի ետ մղել Կամսարականները։

Այս տեսութիւնը հիմնաւորելու համար կը դիմեմ մատենագրական այն տեղիքներուն, որոնք տոհմերու կամ նախարարներու ցանկեր կը պարունակեն՝ կամսարականներով միասին։ Հայ թագաւորական շրջանէն հետեւեալ ցանկերը ունիմ աչքիս առջեւ։

ա. Բուզ. Գ, ժզ. 1. Վասակ Մամիկոնեան. 2. Մեհենդակ Ռշտունի. 3. Անդովկ Սիւնի. 4. Արշաւիր Կամսարական։

բ. Բուզ. Գ, իա. 1 Նահապետն Սիւնեաց. 2. Նահապետն Արշարունեաց (= կամսարական), որոնք կը կոչուին "ի մեծ նախարարաց անտի, աւագանին Հայոց„։

գ. Բուզ. Դ, գ. 1. Մարդպետ. 2. Ասպետ. 3. Իշխանն Ծոփաց, 4. Ռշտունեաց. 5. Սիւնեաց. 6. Տիրակայ եւ Արշարունեաց 7. Միւսոյ Ծոփաց. 8. Անձաւունեաց.

Բուզ. Գ, ժա, կայ ցանկ մը Ներսէսի հետ առ Վաղէս գացող նախարարներու։ Կը պակսին ոչ միայն կամսարականները, այլ նաեւ իշխանն Սիւնեաց, Ասպետը եւն։

Այս ցանկերուն համեմատ ուրեմն՝ Թագաւորական շրջանին բացի Մարդպետէն, Ասպետէն, Սպարապետէն եւն՝ կամսարականներէ նախագահ էին՝ Սիւնիք, որոնք երկու անգամ նախ կը յիշուին, — Խորենացւոյ յետոյ պիտի անդրադառնանք — բուն Ծոփք եւ Ռշտունիք։ կամսարականներէ ետք կու գան Անձաւունիք։

Յետ-Թագաւորական շրջանին համար կարեւոր կը թուին սա տեղիքները.

ա. Դ. փարպ. Բ, իգ. Յազկերտի նամակին տրուած պատասխանին կը ստորագրեն՝ «Որք ի նախարարացն էին ժողովեալք՝ 1. Սիւնեաց. 2. Արծրունեաց. 3. Մաղխազ. 4. Մամիկոնեանց. 5. Վահեւունեաց. 6. Մոկաց. 7. Անձեւացեաց. 8. Ապահունեաց. 9. Վանանդայ. 10. Արշարունեաց. 11. Ամատունեաց. 12. Գնունեաց. 13. Պալունեաց. 14. Վարազ-Շապուհ. 15. Աշոցաց. 16. Դիմաքսենից. 17. Աբեղենից. 18. Առաւեղենից. 19. Ջիւնական։

բ. փարպ. Բ, լ. զՎարդան Յունաստան երթալու խորհուրդէն ետ կեցնելու համար Վասակ կը յղէ «արս աւագս ի տանուտէրանց Հայոց 1. զիշխանն Արշարունեաց. 2. Դիմաքսենից. 3. Աբեղենից»։

գ. փարպ. Բ, լդ. Վարդանի հետ դէպի Աղուանք կը չուեն տանուտեարք՝ 1. Խորխոռունի. 2. Կամսարական. 3. Դիմաքսեան. 4. Պալունի. 5. Վահեւունի. 6. Դիմաքսեան։

դ. փարպ Բ, լե. 1. Կամսարական. 2. Դիմաքսեան։

ե. փարպ. Բ, լթ. Աւարայրի ճակատին մէջ «ի միջոցի գնդին» կը կարգուին՝ 1. Տէր Արծրունեաց. 2. Մարդպետ. 3. Արշարունեաց. 4. Մոկաց՝ «այլ աւագ նախարարօքն»։

զ. փարպ. Բ, խբ. Ի դուռն Արեաց տայր խաղացուցանել զիշխանս՝ 1. Արծրունեաց. 2. Ամատունեաց. 3. Վանանդեայ. 4. Արշարունեաց. 5. Անձեւացեաց. 6. Ամատունեաց.

7. Գնթունեաց. 8. Աշոցաց. 9. Առաւեղենից 10. Տաշրաց. 11. Արծրունեաց։„

Է. Եղիշէ Ե, 77. յԱրտաղ ժողուած էին իշխանք՝ 1. Արծրունի. 2. Խորխոռունի. 3. Մամիկոնեան. 4. Պալունի. 5. Ամատունի. 6. Վահեւունիք. 7. Դիմաքսեան. 8. Արշարունի. 9. Ընձեւացի. 10. Գնթունի. 11. Գնունի. 12. Գաբեղեան. 13. Սահառունի. 14. Դիմաքսեան. 15. Քաջբերունի. 16. Մանդակունի. 17. Ընծայացի. 18. Սղկունի. 19. Տաշրացի. 20. Արծրունի. 21. Հայ Խոռապետն արքունի. 22. Սրուանձտեանց. 23. Քողեանք. 24. Ակէացիք. 25. Տրպատունիք. 26. Ուշտունիք։

Ը. Փարպ. Բ, խը. Որկանք տարագրուելու համար կապանքի կը զարնուին՝ տեարք՝ 1. Սիւնեաց. 2. Արծրունեաց. 3. Մամիկոնեանց. 4. Կամսարականաց. 5. Ամատունեաց. 6. Գնունեաց. 7. Դիմաքսենից. 8. Ընձեւացեաց. 9. Առաւեղենից. 10. Արծրունեաց. 11. Մանդակունեաց. 12. Տաշրացեաց. 13. Ռափսենից։

Թ. Նոյն ցանկն Եղիշէի քով, 166. տեարք 1. Սիւնեաց. 2. Արծրունեաց. 3. Մամիկոնեանց. 4. Կամսարականաց. 5. Ամատունեաց. 6. Գնունեաց. 7. Դիմաքսենից. 8. Ընձեւացեաց. 9. Առաւեղենից. 10. Արծրունեաց. 11. Մանդակունեաց. 12. Տաշրացեաց. 13. Ցռափսոնեան։ Որբեմն յաջորդականութեան կողմանէ յար եւ նման փարպեցւոյ։ Ընձանց ինչ ինչ անուններ միայն կը տարբերին։

Ժ. Փարպ. Գ, կը. Վահանայ հետ են

տեարք՝ 1. Սիւնեաց. 2. Քաջ Սեպուհն Մամիկոնէից. 3. Մաղխազ. 4. Կամսարականաց. 5. Գնունեաց։

Այս տեղիքներուն արժէքը բնականաբար հաւասար չէ։ Ընդհանրապէս հարկ էր ապացուցանել, որ պատմագիրները դիտաւորութիւն ունէին տոհմերը անոնց աստիճանին կարգաւ յիշել։ Սակայն կարծեմ երբ զանազան պարագաներու մէջ եւ այլեւայլ տեղեր տրուած ցանկեր համաձայնութիւն կը ցուցնեն յաջորդականութեան կողմանէ, այդ համաձայնութիւնը իրական հիմ մը կը պահանջէ։ Տոհմերու աստիճանէն կամ բարձէն դուրս ուրիշ լաւագոյն հիմ մտածել անհնար է իսկ պաշտօնական հանգամանք ունեցող վաւերաթղթերու մէջ ստոյգ է, որ ստորագրութիւնը աստիճանի կարգաւ կը դրուէր։ Այս սկզբունքներու վրայ յեցած՝ կը համարիմ որ գրական հիմ ունին ա, բ, գ, դ տեղիքները իրենց ներկայացուցած յաջորդականութեամբ։ Միւս տեղիքները աւելի կամ նուազ չափով խախուտ կռուան կ'ընծայեն տոհմերու դասաւորութեան, որովհետեւ կախում ունին պատմագրի գրչէն, եւ տոհմի մը այս կամ այն դէպքին մէջ խաղացած կարկառուն դերէն։ Բացարձակապէս անարժէք է տեղիք ե, ուր Եղիշէ ըստ կամի եւ խառնիխուռն կը թուէ անձերը։

Աւստի ուր որ ա, բ, գ, դ տեղիքները կը շեղին միւսներէն, հաւանականութիւնն իրենց կողմն է։ Այս չորս տեղիքները իրարու մէջ իրական տարաձայնութիւն չեն ցուցներ, բայց կը

տեսնուին անհամաձայնութիւններ համեմատու-
թեամբ միւս տեղիքներուն:

Տոհմեր կան, որոնց անունը Կամսարական-
ներէ երբեմն յառաջ երբեմն ետքը դրուած է,
այսպէս՝ 1. ա՝ Մոկք յառաջ են, իսկ ե՝ ետքը.
2. ա՝ Վահեւունիք յառաջ են, իսկ գ՝ ետք.
3. ա՝ Անձեւացիք յառաջ են, իսկ ղ՝ ետք.
4. ղ՝ Ամատունիք թէ յառաջ եւ թէ ետք կը
յիշուին, իսկ ը—ը՝ միայն ետք:

Ե տեղիքը արժէք չունի, որովհետեւ պատ-
մագրին խօսքն է: Մոկաց դիրքը Կամսարականաց
հանդէպ ճշգիւ կը բացատրէ տեղիք ա: Տոհմիս
առաջնութիւնը կը ստուգուի նաեւ անով, որ
Մոկաց իշխանը Ագաթ. թէ 795 եւ թէ 876
յառաջ բերած է գլխաւոր նախարարներու
թուին մէջ: Նկատմամբ Վահեւունեաց եւ Ան-
ձեւացեաց ալ նախապատուութիւնը կու տամ ա
կարգին, քանի որ գ եւ ղ լոկ ազատ-պատ-
մագրական տեղիքներ են: Իսկ գալով ղ եւ
ը—ը տեղիքներու տարբերութեան, ի նպաստ
Կամսարականներու կը հարթուի: Ղ տեղիքի
մէջ երկու անգամ կը պատահի Ամատունի ա-
նունը. 2. "զիշխանն տանն Ամատունեաց" եւ
6. "զիշխանն տանն Ամատունեաց զՎահանն":
Յայտնի է որ աւելորդ կրկնութեան մը առջեւ
կը գտնուինք: Առաջին անգամ յատուկ անունը
կը պակսի, եւ այս պատճառաւ արդէն կասկա-
ծելի է անոր հարազատութիւնը, զոր կարելի էր
պաշտպանել միայն այն ատեն, երբ երկու տար-
բեր անձինք ըլլային, մին Իշխան, միւսը Սեպուհ

կամ Աւագ Սեպուհ, ինչպէս օ. հ. փարպ. Բ, խը. նղ. 186 երկու անգամ կը գնեն Արծրունի, կամսարականներէ յառաջ՝ Տանուտէրն Ներշապուհ, իսկ կամսարականներէ ետք՝ Աւագ Սեպուհը՝ Ապրսամ: Մեր դէպքին սակայն՝ միեւնոյն տանուտէր իշխանն է: Անհարազատութեան վկայ են նաեւ ինչ ինչ ձեռնագիրներ: Տէր-Մկրտչեանի եւ Մալխասեանի հրատարակութեան մէջ, էջ 75, ծն. 20 կը կարդանք. "Բ, Գ, տ. չիք՝ եւ զիշխանն տանն Ամատունեաց": Աւելցնենք որ նաեւ Բուզանդայ քով կամսարականները Ամատունիներէ յառաջ են:

Եզրակացնելով — ժ տեղիքներու վկայութեան համեմատ կրնանք ընդունիլ, որ կամսարականներէ յառաջ էին.

Սիւնիք, Արծրունիք, Մարդպետ, Մաղխազ = Խորխոռունիք, Մամիկոնեանք = Սպարապետ, Վահեւունիք, Մոկք, Անձեւացիք, Ապահունիք, Վանանդ:

Ասոնց վրայ աւելցնելու ենք ըստ Բուզանդայ՝ Ասպետ, Ծոփք, Ռշտունիք. ընդամէնը՝ 13 տոհմ: կամսարականաց գահն էր ուրեմն 14ը:

Կամսարականներէ ետք կու գային՝ Ամատունիք, Գնունիք, Պալունիք, Դիմաքսեանք, Աշոցք, Աբեղեանք, Միւս Ծոփք եւն, եւն:

Այս հետազօտութիւնը կատարած ժամանակս գիտմամբ խորհուրդ չհարցուցի Գահնամակին, որպէս զի վերաքննութեան միջոց մը ունենայի: Մերձենանք այժմ Գահնամակին:

Գ. Հախվերտեանի կը պարտինք անոր թանկարժէք գիւտը։ Առաջին անգամ հրատարակած է Էմին, Խորենացւոյ ռուս. թարգմանութեան մէջ (1858)։ Ալիշան, Այր. 430—431 կու տայ «Պատճէն վռամական գահնամակին», նաեւ լուսատիպ։ Մասնաւոր քննութեան առարկայ ըրած է զայն Խալաթեանց (Թրգմ. Սիմոնեանց, ԱՄ. ԾԱ. 94—103)։ Վերջինս հակառակ Ալիշանի ՙվռամական, սրբագրութեան — գահնամակի պատմական յառաջաբանին մէջ — կ'առաջարկէ՝ ռամականնամա = պրսկ. րամ երամ = գեղջկական, շինական ցուցակ, կամ՝ գիրք հարկատու դասակարգի (էջ 96)։ Իսկ Շահ նամա կ'ուղղէ շահհամար = պետական աշխարհագիր ընել, բոլոր հայ իշխող նախարարներու ցանկը կազմել։ Գահնամակի յառաջաբանին մէջ պարզ ու անպաճոյճ, բայց մաքուր լեզուով գրուած է Ե. դարուն՝ հետեւեալ իրողութիւնը։ Սահակ կաթողիկոս՝ Արտաշրի (379—383) դիւանին մէջ՝ Վռամ Կրման-Շահ Բ.ի օրով, իրր 389, Քաղոց 17ին (Գեկտ.) տեսած էր «ռամականնամա»։ Այսպէս կը հասկնամ յառաջաբանը հակառակ Խալաթեանցի, որուն համեմատ Սահակ ոչ թէ 389ի, այլ 426ի այցելութեան միջոցին կը տեսնէ ռամական նամա։ — Երբ թագաւորութեան երկուքի բաժնուելովը նախարարական կարգերը կը խառնակին, Սահակ, հաւանաբար Արտաշէս թագաւորի (420—426) գահակալութեան գործով, Վռամի (420—

438) կը ներկայանայ, եւ կը խնդրէ միանգամայն, յիշեցնելով 389ին տեսած վաւերաթուղթը, որ “ռամական նամա„ի հիման վրայ՝ շահհամար, ըլլայ։ Խնդիրքը կ՚ընդունուի, գահնամակը կը կազմուի եւ կը յանձնուի Ս. Սահակի, կնքուած արքունական եւ կաթողիկոսական կրկին մատանիներով։

Պատմական այս յառաջաբանին կը յաջորդեն նախարարական գահերը։ Յառաջ կը բերեմ զմեզ հետաքրքրող մասը՝ աջ կողմ նշանակելով իւրաքանչիւր տոհմի “Զօրաթիւը„ (Ալիշան, Այր. 424)։

| | | |
|---|---|---|
| | Առաջին իշխանն Հայոց եւ Մաղխազն [Խորխոռունիք] . | 1.000 |
| Բ. (ձեռագրին մէջ հոս կը սկսի Ա.) | Սիւնեաց Տէր . . . | 19.400 |
| Գ. (Բ.) | Ասպետն [Բագրատունիք) . . . . . . | 1.500 |
| Դ. (Գ.) | Արծրունեաց Տէր . . | 1.000 |
| Ե. (Դ.) | Մամիկոնէից Տէր . . | 1.000 |
| Զ. (Ե.) | Շահապն Ծոփաց Տէր | 1.000 |
| Է. (Զ.) | Մոկաց Տէր . . . . | 1.060 |
| Ը. (Է.) | Ռշտունեաց Տէր . . | 1.000 |
| Թ. (Ը.) | Վահունեաց Տէր . . | 1.000 |
| Ժ. (Թ.) | Կասպէից Տէր . . . | 3.000 |
| ԺԱ. (Ժ.) | Անձեւացեաց Տէր . . | 500 |
| ԺԲ. (ԺԱ.) | Ապահունեաց Տէր . . | 1.000 |
| ԺԳ. (ԺԲ.) | Կամսարականն . . . | 600 |

Կը շարունակուի մինչեւ ՀԱ(Հ.)՝ Վազրասպունին։

Այս եւ մեր ցանկին մէջ եղած համաձայնութիւնը գոհացուցիչ է. տարբերութիւնները չնչին։ Մեր յիշած տեղիքներուն համեմատ Կամսարականք ունին ԺԴ. գահ, իսկ՝ հոս՝ ԺԳ։ Տարբերութեան պատճառներն են՝ 1. Մարդպետը, զոր Գահնամակը չունի. 2. Վանանդը՝ որ Գահնամակին մէջ ԺԵ. գահը կը բռնէ. 3. Կասպէից Տէրը, որ մեր տեղիքներուն մէջ կը պակսի։

Առանց դեդեւելու ջնջելու ենք Մարդպետը յետ-Թագաւորական շրջանին համար, երբ յիշուած է մէկ անգամ, բոլորովին անպաշտօն տեղ մը. Փարպ. Բ, ԼԹ։ Մարդպետին դիրքը (Խալաթեանց, Очерк, 182. Dolens, 215, 218) այնպիսի էր որ հայ գահուն կործանելով կը կորսնցնէր իր կարեւորութիւնը։ Ուստի իրաւամբ Ինճիճեան (Հնախ. Բ, 137) կը հետեւցնէ անոր բարձումը Արշակունեան գահին կործանումէն յետոյ։ Կրնար մարդպետութեան այս կամ այն ժառանգը, եթէ կապուած էր որոշ ցեղի, ինչ որ անստոյգ է, տակաւին քիչ մը ժամանակ շարունակել տիտղոսը, առանց սակայն նախկին բարձին կամ գահին վրայ իրաւունք ունենալու։ Գահնամակն էր անշուշտ որ մարդպետին այս գահազուրկ վիճակին իրական կնիք կու տար անոր վրայէն լռութեամբ անցնելով։

Կասպէից Տէրը այլուր յիշուած չեմ գտներ, թէեւ “Կասպք„ բաւական նիւթ եղած են պատմական վէճերու եւ դէպքերու (Հիւբշման, ԱՄ. Ծգ., 101—106)։ Հաւանօրէն փայ-

տակարանի նախարարը հասկնալու է, որուն քաղաքականօրէն եւ աշխարհագրօրէն կարեւոր դիրքը՝ բնական է որ ապահովէր առ նուազն Թ. գահը (Ալիշան, 428—429)։ Ե. դարու մատենագիրները առիթ չունէին յիշելու զայն։

Կը մնայ “Վանանդ„ի տարբերութիւնը։ Գահնամակ եւ պաշտօնական նամակի մը ստորագրութիւնները հեղինակութեան ու հարազատութեան կողմանէ այնքան համարժէք են, որ դժուար է չտատամսիլ մին կամ միւսը արժանահաւատութենէ զրկելու մէջ։ Վանանդացւոց 1000 զօրութիւնը հանդէպ Կամսարականներու 600ին՝ վճռական պարագայ չէ ի նպաստ անոնց առաջնութեան, որովհետեւ օ. հ. Վահունիք, զոր Գահնամակը Կամսարականներէ յառաջ կը դնէ, 500 զօրաթիւ ունին, եւ բազմաթիւ տոհմեր, որոնք 1000 զօրաթիւ կը մատակարարէին, Գահանամակին մէջ Կամսարականներէ ետք դրուած են, նոյնպէս Կասպից Տէրը Թ. գահը կը գրաւէ, թէեւ 5000, մինչ իրմէ յառաջ Դ.—Թ. գահերը 1000ական զօրաթիւ ունին։

Առ այժմ կը շատանամ ձեռք բերուած արդիւնքով. Կամսարականները ունէին ԺԳ., եւ եթէ իրենցմէ յառաջ էր նաեւ Վանանդ, ԺԴ. գահը։ Այս եզրակացութիւնը կ'արժէ ապահովապէս Ե. դարու համար, բայց Դ. դարուն եւս գահերը շատ տարբեր դասաւորուած չեն կարող ըլլալ, որովհետեւ Կամսարականներէն յառաջ եղած տոհմերու մեծ մասը արդէն Ագա-

թանգեղոս կամ Բուզանդ իբր աւագ նախարար կը ճանչնան։ Զորս բդեաշխները կ՚աներեւութանան Արշակունի գահուն հետ միասին (Ինճ., Հնախ. Բ, 240—246), բայց անոնց տեղ ուրիշ տոհմեր կը յառաջանան, այնպէս որ կամսարականներու գահը գրեթէ անփոփոխ կերպով ԺԴ., ԺԳ. կրնայ մնացած ըլլալ։

Այս նախադասութեամբ կը բախինք Խորենացւոյ։ Ահա թէ ինչ մանրամասնութիւններ կը հաղորդէ նա կամսարականներու աստիճանին մասին։

Երբ կամսարականք Հայաստան կը գաղթեն, Տրդատ Մեծ զանոնք “կարգէ ի թիւ նախարարութեանց,, (Խոր. Բ, ղ)։ 338ին Խոսրով Բ.ի մահէն ետք Ս. Վրթանէս “յանձն առնէ զաշխարհս Արշաւրի կամսարականի, որպէս գլխաւորի եւ յոյժ պատուականի յետ արքայի„։ Ցանկարծական այս չափազանց բարձրացումը ակամայ կասկած կը ծնանի։ Մեկնութիւնը կու տայ Բուզանդ։ Խորենացւոյ Գ. Ղ՝ խեղաթիւրումն է Բուզ. Գ. Ժա.ի։ Բուզանդի համեմատ Վաչէ Մամիկոնեան, այն դիւցազնը որուն վրայ պատմագիրը ներբողներ կը հիւսէ եւ զոր Խոր. բոլորովին կ՚անգիտանայ, կը մեռնի պատերազմի դաշտի վրայ թողլով անչափահաս ժառանգ մը՝ Արտաւազդ, զոր “ի հայրենի բարձ գահուն մատուցանէին... առաջի թագաւորին զհօրն պատիւն ի գլուխ դնէին՝ եւ զսպարապետութեան նորուն տեղի,,, եւ իբր խնամակալ կը կարգուի կամսարական մը, որուն “զզօրավա-

րութեան գործ յանձն առնէին„ (Բուզ. Բ, ժա)։ Այս իրողութիւնը առիթ եղած է Խորենացւոյ՝ Կամսարականաց տալու "գլխաւոր եւ յոյժ պատուական„ տեղ մը "յետ արքայի„։ Բայց ասով ալ չի գոհանար։ Խոր. Գ, խթ. Խոսրով Գ. Նախարարներու գրած նամակին մէջ՝ մասնաւորապէս Գազաւոն Կամսարականի կ'ուղղէ սա խօսքերը. "Եւ զքեզ, Գազաւոն, արիւն եւ հարազատութիւն իմ, ոչ ըստ վաղնջուց ազգականութեանն, այլ ըստ արդեանս, որ ի մօրէ քումմէ Արշանուշայ Արշակունւոյ, հանեալ զքեզ ի հայրենեաց քոց Կամսարականաց, եւ ի մայրենիս քո յիմս առեալ ազգ՝ Արշակունի անուամբ պատուեցից„։ Ահա բարձրութեան գագաթնակէտը։ Կը յաջորդէ թաւալգլոր գահավէժ անկում։ Խոր. Գ, ծ. Գազաւոն ի պատիժ Յոյներուն ըրած ծառայութեան Խոսրովի հետ կը գերուի, բարձրնկէց կ'ըլլայ, եւ Արտաշէս (!) "զտուն նորա հրամայէ ունել յարքունիս„։ Գ. ծա, Սահակի խնդրանքով սակայն "հրամայեաց (Արտաշիր) զտունս երկաքանչիւրոցն (Կամսարականաց եւ Ամատունեաց) զկալեալսն յարքունիս՝ դարձուցանել„ Կամսարական պայազատներուն, որոնք պարտք չունէին "բառնալ զյանցանս հարց„, "բայց միայն ի զահ հայրենի ոչ հաստատել, այլ ի խոնարհ քան զբազումս մատուցեալ նախարարս ի կարգ կրտսերագունից պատուաստել„։ Աւելի յաջողութիւն կ'ունենայ Ս. Սահակ՝ երբ Արշակունի գահի կործանումէն ետք դուռը կ'երթայ. Կը խնդրէ որ

Հրահատ կամսարական վերահաստատուի "Թէ եւ ոչ յիւրում տեղ" (այսինքն առաջին գահ յետ արքայի) "գէթ ի կարգ ընկեցեալ ընդ այլ նախարարս թուեցի": Կը մնայ որ Խոր. կամսարականաց ԺԳ. գահաթիւն ալ յիշէր, ինչպէս կը յիշէ Մամիկոնեանց (Ե)՝ համեմատ Գահնամակին, որպէս զի ինք զինքը Գահնամակին հետ համաձայնցընելու ջանքը ակներեւ դառնար:

Ինչո՞ւ հնարած է Խորենացի գահաստիճանի այս տարուբերումը, ելեւէջը:

Խաղաթեանց կը մեկնէ (անդ, 100—102). Մեզի անծանօթ պատճառներով՝ կամսարականք կը վայլեն Պատմահօր համակրանքը: Իր այս համակրանքին հետեւութեամբ նա շռայլ առատաձեռնութեամբ տոհմիս կը բաշխէր առաջին գահերը Թագաւորութեան շրջանին: Սակայն Խորենացի կը ճանչնար նաեւ Գահնամակը, որուն մէջ շատ անհաճոյ կերպով ԺԳ. գահ տրուած էր իրեն համեմատ "յետ արքայի երկրորդ" կամսարականաց: Ակնբախ հակասութիւն մը, զոր բառնալու համար կը ստեղծէր գլ. Ծ, Ծա, միջադէպերը, որպէս զի ապա դար միանար Գահնամակին՝ կե գլխով:

Մեր հետապնդած նպատակին համար Մեսրոպ Երէցի ներկայացուցած ցանկը (Սոփ., Հայկ. Զ, 32—38) բոլորովին զուրկ է նշանակութենէ:

Ի՞նչ կերպարանք ստացան հայ նախարարական գահերը Վահանեան կռիւներէն յետոյ: Կամսարականք Մամիկոնեաններու հետ միասին

ունեցած պիտի ըլլան արժանաւոր բարձրացում։ Գահերու կամ բարձի հարցը Արշակունի հարստութեան անկումով կը կորսնցնէր իր հաստատուն կայանը։ Այնուհետեւ քաջութիւնը կ'որոշէր անոնց դիրքը եւ երկու մեծ պետութիւններուն վերին կամքը աղիկամի կը տրամադրէր ու հաւատարիմ տոհմեր կը բարձրացնէր։ Ուստի շատ բնական է, որ Հայրենիքի համար անմահ արդիւնք վաստկող Մամիկոնեանք ու Կամսարականք նախագահ եղած ըլլան Ե. Զ. Է. դարերուն։ Եւ իրապէս անոնց անունները առաջին տեղը կը գրաւեն օ. հ. Գիրք Թղթոցի յիշած (էջ 42, 48) ստորագրութիւններուն մէջ։

## § 4. Կամսարականներն ու Մամիկոնեանները։

Կամսարականները հասկնալու եւ գնահատելու ամենաազդու միջոցէն պիտի զրկուէինք, եթէ անտեսէինք այն սերտ ու յարատեւ աղերսը, որ կը նշմարուի այս երկու տոհմերուն մէջ այն ամէն տեղ, ուր անոնց ընդհանուր ազգային գործունէութիւնը կը շօշափուի։ Եթէ Դ. Ե. դարու պատմութեան մէջ Կամսարականներն ալ կը յիշուին, այդ՝ ոչ նուազ չափով Մամիկոնեաններու շնորհիւ է, որոնց անքակ եւ ամենահաւատարիմ գաղափարակիցները կը մնան գրեթէ առանց ընդհատութեան երկու տոհմերուն միաժամանակ երեւումէն մինչեւ երկուքին ալ անհետացումը։

Կամսարականք ու Մամիկոնեանք հաւանաբար միեւնոյն դարուն եւ նման պարագաներէ մղուած Հայ հողի վրայ կ'ապաստանին Գ. դարուն (Aslan, 139), սիրալիր ընդունելութիւն կը գտնեն, ընդարձակ երկիրներ նուէր կը ստանան եւ նախարարութեան կարգ կը բարձրանան։ Համաժամանակ այս գաղթին հեռաւոր արձագանգն է, որ պահուած է Խորենացւոյ քով (Բ, ձա), քիչ մը այլայլած եւ կերպարանափոխ եղած։ Մինչդեռ Մամիկոնեանք իբր գոռ, տիրասէր պատերազմողներ փառաւոր սկզբնաւորութեամբ մը յուսալից ապագայի մը հիմնաքարը կը դնեն (Խոր. բ, ձգ) եւ իրենց անհատական արժանիքի վրայ կը հիմնեն իրենց հողերը, Կամսարականք շնորհիւ իրենց արեան է որ սեպհական փայլով ու արտօնութիւններով կը շրջապատուին։ Հակառակ այս տարբերութեան՝ երկու տոհմերուն ժամանակաւոր կարօտութիւնը, օտարութիւնը հայ հողի վրայ, եւ ներգաղթի շարժառիթներուն նոյնութիւնը կ'ըլլային ազդու պատճառներ զանոնք իրարու մերձեցնելու։

Բայց կար նաեւ ուրիշ պատճառ մը այս երեւոյթին։

Այն նպատակը, զոր հայ արքունիքը կը հետապնդէր, երբ օտար տոհմերու հողեր կը շնորհէր իր տէրութեան մէջ, կամ արենական կապեր կը հաստատէր բնիկ նախարարներու հետ, կը ձգտէր արքունիքի անձնանուէր հաւատարիմներ ստեղծել, որոնք նեցուկ ըլլային գահուն, երբ ուրիշ նախարարներ իրենց ծա-

ւայ արքայի հանգամանքին փոխարէն՝ անկախ «տանուտէր»ի տիտղոսին յարէին գործնականօրէն եւ ապակենդրոն ձգտումներ ցուցադրէին։ Եւ նոյն այդ նպատակը հրապուրիչ էր նաեւ մէն մի նախարարական տոհմի համար։ Անոնք ալ, մանաւանդ քիչ թէ շատ կարկառուն դիրք եւ զօրաւոր բազուկ ունեցողները, օտար չէին թագաւորին եւ միւս նախարարութեանց դէմ՝ պահանջուած պարագային՝ ինքնակաց ոյժ մը հակադրելու բաղձանքին, ոյժ մը, որ բաղկանար զանազան հզօր տանուտէրերու գործակցութենէն։ Ուրիշ խօսքով՝ նախարարներն ալ իրենց ոյժը ծաւալելու կը ջանային օտար տոհմեր իրենց կապելով։ Պարզ նախարարներու համար սակայն դժուար էր բոլորովին օտար տոհմեր հիւրընկալելով եւ անոնց հողեր պարգեւելով՝ այդպիսի կապ մը հաստատել, աւելի պարզ ու դիւրին էր արիւնակցական զօդ ստեղծել։ Քաղաքական այսպիսի նպատակներով գոյացած արիւնակցական կապերն այնքան յաճախաթիւ են հայ պատմութեան մէջ, որ աւելորդ են օրինակները։ Սեպհական տոհմի ոյժը բազմապատկելու համար ազդեցիկ նախարարներ իրենց հովանաւորութեան տակ կ՚առնուին բնաջնջման վտանգի մէջ ճօճացող տոհմեր, անոնց մէկ հատիկ անչափահաս ժառանգները կը փրկէին եւ իրենց տոհմակիցներով՝ անոնց կենսունակութիւն կու տային։ Մարդասիրական վեհանձն արարքներ, որոնք կու գային ազդուօրէն յառաջ մղել ու քաղաքական ու տոհմային ցանկութիւններ։

Այս կը համարիմ կամսարականաց եւ Մամիկոնեանց մերձեցման երկրորդ պատճառը եւ ուժեղ — ձեւը խնամիական կապեր։ Երկու տոհմերն ալ օտարամուտ, նորահաստատ, երկուքն ալ Արշակունի գահուն գուրգուրանքին եւ շնորհքին առարկայ էին։ Մինչեւ բնական չէ՞ր այս արտաքին աղերսներն նուիրագործել եւ ամրապնդել խնամակցութեամբ։ Գոյքն նպաստ չէր այդ՝ երկու տոհմերուն ուժեղացման, անով կըրնային դիւրաւ հաստատուն դիրք ապահովել հանդէպ ընդոծին նախարարութիւններու։ Թերեւս նոյն իսկ անհրաժեշտ կը զգային ոյժի եւ քանակի հոլովում մը, եթէ իրենց ներս մտնելով՝ նախարարական հին տոհմեր վնասուած (Խոր. Բ, ձդ) կամ դժգոհած էին։

Ամէն դէպքի մէջ շատ խոր ու ծանրակշիռ եղած ըլլալու են այն պատճառները, որոնք երկու ազնուական տոհմեր կրցած են իրարու շաղկապել դարերու տեւականութեամբ։ Պատմական տուեալներ կը հրապուրեն զիս հաւանական համարել Դ.—Է. դար Հայ — կամսարական բոլոր նահապետներու զուգումը Մամիկոնեան դուստրեներու հետ։ Իրականութիւն է, որ մեր ծանօթութեան հասած կամսարական տանուտէրերուն մեծ մասը իրեն կողակից ունի Մամիկոնեան Տիկին մը։

Առաջին կամսարականը որ պատմութեան մէջ երեւան կու գայ երբ 337ին՝ Արշաւիր՝ փեսայ էր "տանն Մամիկոնեան տոհմին„ (Բուզ. Գ. ժա)։ Հաւանօրէն սա այն Արշաւիրն է, զոր

Խոր. Բ, ղ. կը յիշէ Տրդատի ժամանակ, բայց լռութեամբ կ'անցնի — անտարակոյս դիտումնաւոր զանցառութիւն — Մամիկոնեանց հետ ունեցած փեսայութեան վրայէն:

Արշակ Բ.ի թագաւորութեան ժամանակ Խոր. Գ, լա. կը յիշէ Սպանդարատ Կամսարական, որ ունէր կին Արշակունի՝ Արշանոյշ անուն (Գ, խը): Կը տարակուսիմ տիկնոջս Արշակունի ըլլալուն վրայ: Նա հողեր ունէր "ի կողմանս Տարօնոյ եւ Հաշտենից": Տարօն Մամիկոնեաններու ստացուածք եղաւ Սլկունեաց ջնջուելէն յետոյ (Խոր. Բ, ձա. Գ, կէ. Ասող. Բ, ա. Ինճ. Յո. Հ. Հ. 91): Հաշտենից գաւառը բնակավայր էր Արշակունեաց արքայորդւոց եւ դստեր (Խոր. Բ, է): Հարց է սակայն, թէ Խորենացի Արշանուշին՝ դիտմամբ չէ ընծայած հողեր Հաշտենից մէջ, որպէս զի ծածկէ Սպանդարատի կնոջ Մամիկոնեան տոհմը եւ ի յառաջագունէ բառնայ ամէն տարակոյս: Սպանդարատ "մանկիկ մի փոքրիկ էր եւ ոչ կանամբի՝ երբ Արշակի սպառած արեան բաղանիքէն ճողոպրեցաւ Մամիկոնեանի մը շնորհիւ. "Թագուցեալ ապրեցուցանէր. սպարապետն զօրավարն Հայոց Վասակ (Բուզ. Գ, ժթ): Վասակի խնամակալութեան տակ կը մեծնայ նա: Ըրդ բնական չէ՞ մտածել, որ Վասակ իր տոհմէն անոր կենակից ընտրած ըլլայ: Մի՞թէ այդպիսի հեռապատկեր մը չէ՞ր եղած շարժառիթը իր մարդասիրական գործին: Ա՛յդպէս վարուած էր նոյն իսկ Ռշտունեաց եւ Արծրունեաց հանդէպ. Սրտաւազդ եւ

Վասակ “սնուցանէին զայն մանկունսն, զՇաւասպն եւ զՏաճատ Ռշտունի, եւ ետուն նոցա զդստերս իւրեանց ի կնութիւն„։ Արդ որքան առաւել եւս նոյն կերպ պէտք էր վարուիլ իրենց մտերիմ եւ խնամի կամսարական տան պայազատին հանդէպ։ Խոր. չի կրնար այս երկու տոհմերուն խնամութեան հետ բարեկամանալ, ուստի լռութեան կամ ծամածռութեան կը դիմէ։

Վարդանեան պատերազմին փայլուն դէմքերէն՝ Արշաւիր Կամսարական “էր եւ փեսայ զօրավարին Հայոց սրբոյն Վարդանայ տեառնն Մամիկոնէից, ունելով զդուստր նորա ի կնութեան“ (Փարպ. Բ. լե)։ Վարդանոյշ էր անոր անունը, դուստր Վարդանայ եւ Դստրիկի, քոյր Շուշան Վարդենիի (Կիւլէսէրեան, Ամ. Ծէ, 378. Ջամչեան, Ա. 518 Ալիշան, Շիր. 4)։ Արշաւրայ որդւոց մասին՝ Փարպեցի կը բաւականանայ յիշելով, որ էին “ազգախառն իւրեանց ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ„։

Նախճաւանի տապանագրին մէջ յիշուած Արտաւազդ Կամսարականը, որդի Հրահատայ, — հաւանօրէն Ը. դարու առաջին կէսին — էր ամուսին Շուշանայ Մամիկոնենի (Գ. Յովսէփեան, Շողակաթ, 176)։

Շուշան անունը կը թելադրէ ինծ մակաբերել, որ նաեւ Ներսեհ Կամսարական (688), շինող Թալինի, Մամիկոնեան կին առած ըլլայ։ Թալինի արձանագրութեան մէջ կը կարդանք.

"ի Բարեխաւսութիւն ինձ եւ Շուշանայ ամուսնոյ իմոյ (Գ. Յովսէփեան, 173)։

Խնամիական այս երկարատեւ աղերսը հասկնալի կ'ընէ, որ երկու տոհմերը հոգատար ըլլային փոխադարձաբար իրարու պահպանման ու յառաջացման։ Եթէ Վասակ՝ կամսարականները անձետութենէ կ'ազատէր (Բուզ. Դ, ժթ), Արշաւիր կամսարական ալ անկէ յառաջ յանձնառու կ'ըլլար "սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ, զի կացցէ ի տեղի նախնեացն իւրոց եւ հօր իւրոյ (Վաչէի, Բուզ. Գ, ժա)։ Սահակ Մեծ երկու տոհմերն ալ իր մասնաւոր հայրական հովանաւորութեան տակ կ'առնուր եւ բարեխօս միջնորդ կը հանդիսանար այլ եւ այլ պարագաներու մէջ։

Վերջապէս թէ կրթութեամբ ու դաստիարակութեամբ ալ սոյն երկու տոհմերու մէջ բնական օղակ մը կը ստեղծուէր, ակներեւ է։ Տոհմային սկզբունք կրնանք համարել Փարպեցւոյ պատմածը նկատմամբ որդւոց Արշաւրի՝ Վարդանայ գործակցին. Համայեկի որդիները "նմանեցուցեալ ինքեանց ի յառաջանալ փութային եւ զորդիս երանելոյն եւ ազգախառն իրեանց էին ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ, խրատել եւ հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան եւ ուխտին ջանային" (Փարպ. Գ, կգ)։

Ներգաղթի, արտաքին պայմաններու, խնամիութեան եւ դաստիարակութեան այս կապերը բնականօրէն կը ծնանէին գործունէութեան եւ քաղաքականութեան միութիւն։ Երկու տոհմերն

ալ Հայաստան հաստատուելէ յետոյ հոգւով ու սրտով համակ հայ կը դառնան։ Անոնք՝ հայ հողին, ազգին, գահին լուսամիտ, աներկիւղ, վեհանձն ու նպատակադէտ պաշտպաններն են։ Հայ ազգի ղեկը վարող Մամիկոնեանները՝ կամսարականաց մէջ կը գտնեն միշտ, բայց մանաւանդ Ե.—Զ. դարերուն, իրենց ամենէն հաւատարիմ, ձեռնհաս ու հլու գործակիցները։ Ամբողջ տոհմին նկարագրականը կը գտնեմ Փարպեցւոյ սա խօսքին մէջ, որ նա գրած է Վարդանի ընկեր՝ Արշաւրի համար. «միշտ կամակատար էր բանի սրբոյ զօրավարին» (Փարպ. Բ լղ)։ Մամիկոնեանց ամենափայլուն դրուագներուն բաժանակից են կամսարականները նոյնքան դիւցազնական արիութեամբ։ Վարդան մը 451ին իրեն կողքին ունի Արշաւիր մը. Վահանի մը թեւթիկունք է Ներսեհ մը իր եղբայրներով։ Ուրիշ Վարդան մը 571ին իր ամենախիզախ գաղափարակիցը կը գտնէ Ջուրակի մը մէջ։ Եւ, եթէ կարելի է հաւատալ Խորենացւոյ՝ Մուշեղի մը մարտակից է Սպանդարատ մը Դ. դարուն, երբ նա Բագաւանի արքայից ճակատը կը մղէր (Խոր. Բ, լէ՝ Զիրաւ. Բուզ. Ե, դ—ե)։ Իսկ անկէ ալ յառաջ Վաչէ մը իր տիրասէր արիութիւններուն բաժանորդ ունի Արշաւիր մը։

Միասնական այս գործունէութիւնը կ'ենթադրէ քաղաքական միեւնոյն հայեացքը երկու տոհմերուն նահապետներուն մէջ։ Վաչէի մահէն յետոյ երկրի զօրավարութիւնը չէր կրնար

յանձնուիլ կամսարականներու (Բուզ. Գ, ժա), եթէ անոնք իրենց քաղաքական վարմունքով ապահովութիւն չտային, որ Մամիկոնեան գահանպաստ գործը պիտի շարունակէին։

Մամիկոնեան քաղաքականութիւնը զուտ ազգային էր (հմմտ. Կիւլէսէրեան, անդ, 291—319)։ Նա ուղղուած էր գլխաւորաբար հայ Արշակունի գահուն պահպանման, որուն համար զոհուեցան Վաչէ, Վասակ, Մուշեղ, Մանուէլ հրաշալի դիւցազնները։

Մինչ ուրիշ տոհմեր դաւաճանեցին հայ գահուն իրենց շահերուն համար, Մամիկոնեանները իրենց թիկնապահի ուղիէն չշեղեցան նոյն իսկ այն պարագային, երբ Արշակունի գահի վրայ բազմողները զիրենք կը հարուածէին։ Կարծես թէ այսպիսի անսայթաք ու յարատեւ հաւատարմութիւն մը չէր պատշաճիր Կամսարականաց, որոնք ուրիշներու հետ Յոյները կը հրաւիրեն գալ տիրել երկրին (Բուզ. Գ, իա)։ Մամիկոնեանները չեն յիշուած այս պատգամաւորութեան մէջ։ Կիւլէսէրեանի համեմատ անոնք անխախուտ պահած են իրենց հաւատարմութիւնը եւ ձեռնպահ մնացած (անդ, 308)։ Սակայն անոնց չյիշուելու բուն պատճառը յետոյ պիտի բացատրենք։ Բայց կարելի է ընդունիլ, որ այս դէպքիս մէջ երկպառակութիւն մը գոյացած ըլլայ երկու տոհմերուն քաղաքականութեան մէջ։ Ընդնշմարուած քաղաքական այս տարբերութիւնը վիհի կը վերածէ Խորենացի, երբ Արշակ Բ.ի դէմ պատերազմող Նա-

խարարներու գլուխ կը կանգնեցնէ Ներսեհ Կամսարական մը (Գ, ԻԹ). "միաբանեալ եւ նոցա առաջնորդութեամբ Ներսեհի որդւոյ Կամսարայ, ընդդիմանան Արշակայ պատերազմաւ„: Խորենացւոյ այս տեղեկութիւնը արժանահաւատ չէ: Այս մասին վարը:

Արշակունի հարստութեան դադարումէն ետք Մամիկոնեանք եւ Կամսարականք կը մնան անբաժան իրենց քաղաքական ուղւոյն վրայ: Մինչ Նախարարներէն ոմանք դէպի Պարսիկ կը միտէին, այլք դէպի Բիւզանդիոն կը բարձրացընէին իրենց աչքերը — Մամիկոնեանք մեծագոյն եւ բովանդակ թափով կառչած կը մնային ազգին եւ հայրենիքին, եւ յայսմ՝ իրենց հետ էին Կամսարականները: Նախարարները յունամոլ կամ պարսկամոլ կուսակցութիւններու բաժնուած էին. որոնց քաղաքականութիւնը թէ ազգը եւ թէ հողը Պարսկին կամ Յոյնին կը զոհէր, իսկ Մամիկոնեանց ու Կամսարականաց զուտ ազգային տեսակէտը զերծ էր այդպիսի վտանգէ: Անոնք ալ գիտէին, որ դժնեայ հարկը կը ստիպէր մէկ կամ միւս պետութեան գերիշխանութիւնը ճանչնալ կերպապէս, եւ այդ հարկին առջեւ խոհեմաբար գլուխ ծռելու պատրաստ էին, բայց չէին հանդուրժեր որ այդ գերիշխանութիւնը՝ ազգի, կրօնի, խղճի ու հայրենիքի բռնակալութեան վերածուէր:

Կարելի չէ սակայն ուրանալ. որ նոյն իսկ այս տոհմերուն մէջ Նախասիրութիւն մը կար դէպի Յոյնը, եւ այդ յունասիրութիւնը աչքա-

ռու է աւելի կամսարականներու մէջ։ Մամիկոնեանք սոսկ տոհմային տեսակէտէ ոեւէ հաշիւ չունէին Սասանականին հետ, մինչ կամսարականք անոր ճիրաններէն մազապուր ճողոպրած՝ Հայ Արշակունեաց եւ ասոնց կործանումէն ետք Բիւզանդիոնի մէջ իրենց թիկունք կը ստեղծեն։ Թէեւ ուրեմն ազգային շահերու կողմանէ համակարծիք էին իրարու, բայց տոհմային տեսակէտէ մղումը դէպի Բիւզանդիոն աւելի զօրաւոր էր կամսարականներու քով, մինչ Մամիկոնեանք տոհմային սկզբունքով անտարբեր կրնային մնալ Արեւելքի եւ Արեւմուտքի հանդէպ, թէեւ գործնականին անոնց մէջ ալ կը տեսնուի որոշ չափով միտութիւն դէպի Բիւզանդիոն։ Բիւզանդիոն հակակշիռ էր եւ պահպանիչ ոգին կամսարական տոհմին, որ կորսնցուցած զինքը հովանաւորող գահը՝ ենթակայ էր սասանեան սպառնալիքի ու բնաջնջման։ Եւ թերեւս Բիւզանդիոն ալ տոհմային այս մասնակի քաղաքականութեան գիտակից՝ առանձինն ուշադրութիւն կը դարձնէր կամսարականներուն, անոնց հողերը — պարսկական բաժնի վրայ ըլլալով հանդերձ — իր գոնէ անուանական գերիշխանութեան ենթակայ կը նկատէր։ Մինչ կամսարականները իրենց բարեկամութեան ցոյցերը կը բազմապատկէին բիւզանդական բանակին արի մարտիկներ ու զօրավարներ հասցնելով, որոնք պետութեան անգնահատելի ծառայութիւններ կը մատուցանէին հեռաւոր ռազմաճակատներու վրայ, մինչ Շիրակայ տէրերը նոյն իսկ իրենց երկրին վրայ Բիւզան-

դիոնի գերիշխանութիւնը կը ճանչնային եւ Բիւզանդիոնի կայսրներու գահակալութիւնը հիմ՝ կ'առնուին արձանագրութիւններ թուարկելու —, միւս կողմանէ Բիւզանդիոն զանոնք տիտղոսներով, արտօնութիւններով ու պատիւներով կը ճոխացնէր։ Այս կը պատահէր արդէն Դ. դարուն, երբ Սասանականը պատկառելի ոյժ կը ներկայացնէր, եւ այս յարաբերութիւնը իր գագաթնակէտին կը հասնի Ե. դարուն, երբ արեւելեան ոսոխն հիւծախտէ բռնուած՝ կը կորսնցնէր իր փայլը եւ անապատի ամէհի հրոսակներէն վիրալից կը մեռնէր։

Արաբական շրջանին սկսելէն մէկ՝ մէկուկէս դար ետք թէ Մամիկոնեանք եւ թէ Կամսարականք կը քաշուին ազգային պատմութեան ասպարէզէն։

## § 5. Կամսարականք հայ Արշակունեաց տակ:

—

### ա) Արշաւիր Ա.։

Առաջին կամսարականները, որոնք Հայաստանի մէջ իրենց նոր հայրենիքը գտան, մթութեան մէջ թաղուած կը մնան։ Խորենացւոյ դերոզամատը տեսանք վերը։ Խոր. Բ. ձէ կամսարանուան ժողովրդական ստուգաբանութեան արդիւնք է։ Սա է որ Տրդատ Մեծի օրով "խաղացեալ ամենայն ընտանեօք իւրովք եւ աղխիւ

գայ առ Տրդատ մեր թագաւոր, եղբարց նորա առ Շապուհ երթալով„ (ձէ)։ Թէեւ Տրդատ առանց դժուարութեան անոր մօտ կը շնորհէ իսկոյն, բայց մկրտութենէ ետք միայն կը նուիրէ հողեր. "Ցայնմ ժամու եւ ազգային նոցա կամսար մկրտի իւրայովքն հանդերձ ի ձեռն Մեծին Գրիգորի, արքայի ընդունելով ի Ջրոյն տայ նմա ժառանգութիւն զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ, եւ զգաւառն Շիրակ, որպէս ազգականի իւրում եւ մտերիմ հարազատի„։ Զամչեան, Ա. 416, Հայաստան գալը կը դնէ 321ին, իսկ մկրտութիւնը 325ին (համտ. նաեւ Ալիշան, Շիր. 3)։ կամսարի մահուան պարագան — "այլ նա ոչ աւելի բաւեալ քան զեօթն աւուրս յետ մկրտութեանն վախճանի„ Բ, ղ — մանրամասնութիւն մըն է, որ կասկածի քող կը ձգէ ամբողջ պատմութեան վրայ։ Սաչափս իբր ստոյգ կարելի է ընդունիլ, որ կամսարականներն ալ, որոնք մէկ դարէ ի վեր հաստատուած էին Հայաստանի մէջ, ընդգրկեցին քրիստոնէութիւնը։ Արդեօք Խորենացի տոհմային ընդարձակ աղբիւրներէ՞ կը քաղէր այս դրուագները։ Շատ հաւանական կը համարիմ, որ երբ նա կը կարդար Ագաթանգեղոսի մէջ (832), թէ Գրիգոր յափն Եփրատի կը մկրտէր "զմեծամեծս ամենայն„, այս հաւաքական բացատրութեան մէջ կ'ընդնշմարէր նաեւ կամսարական մեծամեծները, եւ թոյլ կու տար ինք իրեն՝ թանձրացնել ու մասնաւորել իւրովի պատմաստեղծելով։

կամսարականները անկեղծօրէն կ՚ընդունէին քրիստոնէական կրօնը, եւ կը մնային անոր փարած մինչեւ վերջը։ Անոնց կրօնական համոզումը ուրացեալներով երբեք չէ երերուած։

Տոհմիս վաւերական յիշատակութիւնը կը սկսի Արշաւիր կամսարականով։ Նա ծանօթ է թէ՛ Բուզանդի եւ թէ՛ Խորենացւոյ։ Որքան գիտեմ, ոչ ոք չէ տարակուսած, որ Բուզ. Գ, ժա, ժզ, իա. Դ, դ. եւ Խոր. Բ. ղ. Գ. ժ, լա, կը հային միեւնոյն Արշաւիրին։ Սակայն երկու պատմագիրներն իրարու համերաշխ չեն ընթանար։ Խորենացի զգալի կերպով կը խորշի Բուզանդայ Արշաւիրը ներկայացնելէ։

Արշաւիր՝ կամսարի երէց որդին է — «զգլուխ որդւոցն կամսարայ» Խոր. Բ. ղ —։ Հօր անակնկալ մահը զինքը կը կոչէ տոհմին գլուխն անցնելու եւ աշխատելու թէ՛ իր ցեղին եւ թէ՛ հողին բարգաւաճման։ Տրդատ Գ. արքայական եւ ազգակցական սէր կը տածէ հայրազուրկ Արշաւիրի հանդէպ եւ կ՚ամրացնէ անոր տանուտէրութիւնը։ Չամչեան, Ա. 416, կը պատմէ, որ Տրդատ «իբր որդեգիր արարեալ» խնամէ զայն։ Արդեօք ա՞յդպէս պէտք է հասկնալ Խոր. Բ, ղ. «զինքն փոխանակ ծնողին սահմանելով, ազգ զնա սիրէ յանուն հօրն»։ Այս խօսքին մէջ ըստ իս որդեգրութեան ակնարկութիւն չկայ։ Խորենացւոյ խօսքը կը հասկնամ՝ «զԱրշաւիր հօրը տեղ կը կարգէ նահապետ այն տոհմին, որ իր անունը անկէ փոխ պիտի առնուր»։ Այս ժամանակ նախարարական սա-

տիճանի կը բարձրանայ, ըստ Խորենացւոյ, այն տոհմը եւ Արշաւրի ստացուածքները կ՚ընդարձակուին Տրդատի առատաձեռնութեամբ. “Յաւելու եւ այլ պարգեւս՝ զքաղաքն Երուանդայ եւ զնորին գաւառն մինչեւ ցկատար ձորոյն մեծի, միայն զի ի մտաց նորա հեռացուսցէ զյիշատակ բնիկ աշխարհին որ Պահլաւն կոչի, որպէս զի անվրդով զհաւատսն պահիցէ„: Ներքին հակասութիւն կը պարունակեն խօսքերս: Կարծես Տրդատ ծիգեր կ՚ընէ, որ կամսարականք անհաւատարիմ չգտնուին եւ նախկին բնագաւառը չվերադառնան: Բայց մի՞թէ Տրդա՞տ ստիպած էր զանոնք, որ լքեն իրենց հայրենի աշխարհը: Կամսարականք ուրախ էին որ ազատեցան արեան ճապաղիքէն, որուն պիտի մատնուէին, եթէ մնային իրենց բնիկ աշխարհը: Եթէ “զհաւատսն„՝ հաւատարմութիւնը դէպի Տրդատ չպահէին անվրդով, եւ մտաբերէին դառնալ Պարթեւաստան, մի՞թէ կորստեան պիտի չդիմէի՞ն:

Ա՛յս Արշաւրին կը կապէ Խոր. Արշարունիք անունը. “Իսկ Արշաւիր առաւել սիրեալ զգաւառն՝ յիւր անուն կոչէ Արշարունիս, քանզի յառաջ Երասխաձոր կոչէր„ Բ, Ղ:

Խորենացւոյ պատմածներն իրողութիւններ են, որոնք առ հասարակ պէտք է որ այս կամ այն Հայ Արշակունի թագաւորին ժամանակ տեղի ունեցած ըլլան, եւ հետեւաբար ըստ գոյացութեան պատմական են, բայց զանոնք Տրդատի եւ ա՛յն Արշաւրին վերագրելը, զոր

Խորենացի միայն Բուզանդէ կը ճանչնար, այդ Խորենացւոյ գործն է, որով դիտած է նա Բուզանդէ ինք զինքը անկախ ցուցնել եւ չկրկնել այն, ինչ որ դժպհի էր իրեն Բուզանդեան Արշաւրին վրայ։ Թէ վերջինս կրնայ Տրդատ Գ.ի ժամանակակից եղած ըլլալ, կը հետեւի անկէ, որ իբր 337ին արդէն ազդեցիկ դիրք կը գրաւէ։ Իսկ այդ՝ կ'ենթադրէ նախընթաց անհատական գործունէութիւն։ Ամենեւին անհաւանական չէ, որ Մազքթաց դէմ մղուած կռուին մէջ Վաչէի նիզակակից եղած ըլլան կամսարականք, յանուանէ՝ Արշաւիր կամսարական (Aslan, 195), թէեւ տարօրինակ է Բուզանդի լռութիւնը, երբ չի մոռնար Բագրատունիք, Ռշտունիք, Ամատունիք (Գ, ը)։

Իբր փեսայ “տանն Մամիկոնեան տոհմին„ թերեւս ինքնին Վաչէ սպարապետին, Արշաւիր կոչուած էր կարեւոր դեր խաղալու ազգային պատմութեան մէջ։ Վաչէի մահէն յետոյ, երբ Մամիկոնեան “յազգին ոչ գտաւ հուժկու„, որովհետեւ որդին Արտաւազդ “փոքրիկ մանկիկ մի„ էր, թէեւ սպարապետի անուանական պատիւը կը վերապահուէր մանկան, սակայն “զզօրավարութեան գործ յանձն առնէին Արշաւրայ կամսարականի՝ իշխանին Շիրակայ եւ Արշարունեաց գաւառին„ եւ Սիւնեաց իշխան՝ Անդովկայ, որ նմանապէս փեսայ էր Մամիկոնեանց։ Ասոնց պաշտօնը պիտի ըլլար ոչ միայն երկիրը պաշտպանել, այլ նաեւ “սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ, զի կացցէ ի տեղի նախնեացն իւրոց

ձեւ հօր իւրոյ եւ գործ քաջութեան գործեսցէ ամենատեառնն Քրիստոսի„ (Բուզ. Գ., ԺԱ)։ Զօրավարութեան այս բնական ընթացքը կը խեղաթիւրէ Խոր. Գ. Ժ. որպէս զի Մամիկոնեաններն յիշելու չստիպուի։ Խոսրովի մահէն ետք՝ “Ժողովեալ Մեծին Վրթանիսի զամենայն Նախարարս Հայոց հանդերձ զօրօք եւ զօրապետօք յանձն առնէ զաշխարհս Արշաւրի Կամսարականի, որպէս գլխաւորի եւ յոյժ պատուականի յետ արքայի„։ Սակայն երբ մտածենք, որ սպարապետութիւն եւ զօրավարութիւն ժառանգական էին Մամիկոնեան տոհմին մէջ, իսկոյն պիտի տեսնենք՝ թէ որքան բնական եւ արժանահաւատ է Բուզանդի պատմութիւնը, եւ որքան կեղծ՝ Խորենացւոյնը։

Արշաւրի զօրավարութեան շրջանէն Բուզանդ ոեւէ դէպք չի հաղորդեր։ Իսկ Խոր. Գ, Ժ կը պատմէ. “Իսկ արքայն Պարսից Շապուհ իբրեւ լուաւ զմահն Խոսրովու, եւ եթէ որդի նորա Տիրան առ կայսր գնաց, գումարէ զօրս բազումս ի ձեռն Ներսեհի եղբօր իւրոյ, որպէս թէ թագաւորացուցանել Հայոց խորհեցեալ, եւ առաքէ յաշխարհս մեր, իբրեւ անառաջնորդ զսա վարկուցեալ։ Որոց պատահեալ քաջին Արշաւրի Կամսարականի հանդերձ ամենայն Հայաստանեայցս զօրու, ճակատ տուեալ ի Մռուղն անուանեալ դաշտի։ Եւ թէպէտ եւ բազումք ի մեծամեծ Նախարարացն անկան ի պատերազմին, սակայն յաղթեալ Հայոց գնդին՝ փախստական առնեն զզօրս Պարսից եւ պահեն զաշխարհս մինչեւ

ցգալն Տիրանայ„: Այս ամբողջ պատմութիւնը կը հիւսէ Խորենացի ի մի ձուլելով եւ այլայլելով Բուզ. Գ, ժա, իա (Դաղբաշեան, ԱՄ. ԻԹ, 49—55) եւ յայտնի սխալներ գործելով: Նախ՝ Տիրանի գահակալութեան համար պատգամաւորութիւն տեղի ունեցած չէ. Նա առանց արգելքի կը յաջորդէ Խոսրովու (Բուզ. Գ. ժբ): Օրմանեան, ՀԱ. 1909, 199—200 կը գրէ. "Տիրանի առ Կոստանդ դիմելը, որ շատերուն անհաւանական երեւցած է, կը համաձայնի Յուլիանու այն ճառին, յորում կը յիշէ, թէ թագաւոր մը առ Կոստանդ ապաւինած է ընդդէմ Պարսից եւ անոր օգնութեամբ գահը բարձրացած„: Բայց Յուլիանու ակնարկած թագաւորը ոչ թէ Տիրան է, այլ Արշակ, որ 359—360՝ Ամիդի կործանումէն յետոյ Շապուհէ վախնալով կը դիմէր լեռները եւ Կոստանդի օգնութեամբ իբր 360ին կը վերադառնար իր գահը (Aslan, 199—200): Իսկ Տիրանի գահակալութեան համար եղած պատգամաւորութիւնը ըստ Խորենացւոյ ամբողջ կռուին հիմն ու շարժառիթն էր. առաջնոյն հետ երկրորդն ալ կը կորսնցնէ իր պատմականութիւնը: Երկրորդ՝ Ներսեհ՝ Շապուհի եղբայրը չէ, եւ թագաւորած է անկէ յառաջ 293—302, եւ ինչպէս որ Բուզ. կը սխալի Ներսեհ եւ Շապուհ իրարու շփոթելով (Գ, իա). Խորենացի ալ նոյն սխալը կը կնճռոտէ զանոնք իրարու եղբայր հռչակելով: Վերջապէս Մռուղ այլուստ բոլորովին անծանօթ է. Բուզանդի համեմատ (Գ, իա) յաղթութիւնը

կը պատահի Թասենի Ոսխա գիւղը։ Բայց այս գլուխը քիչ ետքը նկատի պիտի առնունք։ — Զամչեան, Ա. 431—432, որ Խորենացւոյ կը հետեւի քայլ առ քայլ, ուրիշ դէպք մըն ալ գիտէ Արշաւիրի զօրավարութենէն. «Ի վճարել այսր պատերազմի՝ հիւսիսականք առ հասարակ՝ Ալանք եւ Հոնք, ընդ որս եւ Կովկասեանք, միաբանեալ եւ անցեալ ընդ կապանն ճորայ՝ այս է դուռն Ալանաց, մտին յԱղուանս եւ բանակեցան անդ, եւ բազում անգամ ելեալ անտի ասպատակէին յաշխարհս Հայոց։ Այլ քաջն Արշաւիր հզօր պաշտպանութեամբ զգուշացեալ ընդդէմ նոցա՝ պահէր զաշխարհն յասպատակութեանց նոցին»։ Զամչեանի նշանակած աղբիւրները, Խոր. Գ, Ժ, ԺԱ, ԺԲ. Յովհ. կաթ. 26. Ասող. Բ, Ա, այսպիսի տեղեկութիւն մը չեն բովանդակեր, որքան կրնամ տեսնել։

Արշաւիրի զօրավարութեան տեւողութիւնն անորոշ է։ Տիրանի թագաւորութեան (339—350) վերջերը՝ երբ 347—348ին արդէն զօրավարութիւնը յանձնուած պիտի ըլլայ Մամիկոնեանց, որովհետեւ Բուզանդ, Գ, ԺԲ Ռշտունեաց եւ Արծրունեաց կոտորածին առթիւ կը պատմէ Արտաւազդայ եւ Վասակի. «որ ի Մամիկոնեան տոհմէն», բարեգործութիւնը եւ զանոնք կը կոչէ «զօրավարք ամենայն զօրացն Հայոց»։ Ուրեմն Արշաւիրի անը երբ 347ին պահանջուած տարիքին հասած էր։ Բայց անկէ յառաջ ալ արդէն Գ, ԺԴ երեւան կու գայ «մեծ զօրավարն Հայոց, որում անուն էր Վասակ»

ի Մամիկոնեան տոհմէն», որ իր հետ առնլով Մեհենդակ Ռշտունի, Անդովկ Սիւնի եւ Արշաւիր Կամսարական՝ Յուսկան բրածեծ բռնամահ ըլլալէ յետոյ (346, Aslan, 196) 346/7ին Կեսարիա կ'ուղեւորուի՝ զՓառէն ի կաթողիկոսութիւն Հայոց Մեծաց ձեռնադրել տալու համար։ Ուրեմն ամէնէն շատ մինչեւ 346 կրնայ Արշաւրի առաջին զօրավարութիւնը տեւած ըլլալ։

Առաջին կ'ըսեմ, որովհետեւ հաւանօրէն երկրորդ անգամ մըն ալ զօրավարութիւնը Կամսարականաց եւ Սիւնեաց անցած է՝ Հայր Մարդպետի գործած խժդժութեններէն վերջ։ Բուզ. Գ., ժը կը պատմէ, որ Արտաւազդ եւ Վասակ Մամիկոնեան «թէպէտ սնուցանէին նոքա զորդին զարքային (Տիրանայ)՝ զԱրշակ, սակայն զչարեալք ընդ գործ ժամանակին [Մարդպետին արիւնարշտութիւնը] թողին զանձն իւրեանց զԱրշակ, եւ գնացին ի բաց ի բանակէն արքունի։ Եւ չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց, եւ անդ նստան ամս բազումս ընտանեօք իւրեանց եւ թողին զայլ զօրուն իւրեանց... ոչ խառնէին նոքա ի խորհուրդս Հայոց մինչեւ ի բազում ամս»։ Այս «բազում ամս» ըսածը իբր 3—4 տարի կը հաշուեմ, վասն զի հազիւ Արշակ գահ կը բարձրանայ (350/1), կը յիշէ իր խնամականները, «եւ դարձուցանէր զնոսա յընդանութիւնն... եւ կացոյց արքայն զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութեանն ազգին իւրեանց, եւ զՎասակ զմիջին եղբայրն զիւր

դայեակն ի սպարապետութիւնն զօրավարութեան յիրս պատերազմացն. սոյնպէս եւ զկրտսերն ի պետս զօրացն կացուցանէր,, (Բուզ. Դ, բ)։ Ուրեմն իբր 347/8—350/1 զօրավարութիւնը Մամիկոնեանց ձեռք չէր եւ անոնք ոեւէ մասնակցութիւն չունէին նոյն ժամանակի անցուդարձերուն։ Բուզանդ կը լռէ, թէ որ տոհմը անցաւ զօրավարութեան պաշտօնին բայց նմանութեան ճամբով այդ լռութիւնը ի նպաստ կամսարականաց եւ Սիւնեաց կը մեկնեմ։ Եւ այս մեկնութեան ոչ նուազ նպաստաւոր է Բուզ. Գ, իա, ուր խօսք կ'ըլլայ պետական կարեւոր պատգամաւորութեան մը մասին։ Զայն կը կատարեն Անդովկ Սիւնի եւ Արշաւիր կամսարական՝ հաւանօրէն իբր զօրավարք աշխարհին։ Մամիկոնեանք չեն յիշուիր, ոչ թէ որովհետեւ հակառակ էին այդ պատգամաւորութեան եւ անոր հետապնդած քաղաքականութեան — երկիրը Յունաց կայսեր ենթարկել — (տ. ՀԱ. 1924, էջ 525—526), այլ որովհետեւ դժկամակած "ոչ խառնէին նոքա ի խորհուրդս Հայոց մինչեւ ի բազում ամս,,։

Արշաւրի երկրորդ զօրավարութեան ժամանակ կատարուած պատգամաւորութիւնը Բուզանդայ քով կարեւոր տեղ կը բռնէ իր հետեւանքներով։

Տիրան՝ գերուելէն եւ կուրցուելէն վերջ՝ գահակալութեան անատակ կը հռչակուի (Բուզ. Գ. ի) եւ աւագանին իրաց ելք կը փնտռէ, ու կ'որոշէ դիմել "առ Թագաւորն Յունաց, զի ի նա

ձեռս տուեալ՝ ծառայեսցեն նմա հնազանդութեամբ եւ լինիցի նա նոցա թիկունք օգնականութեան խնդրել վրէժս ի թշնամեաց նոցա„ (Գ. իա)։ Անդովկ եւ Արշաւիր կը ներկայացնեն խնդիրը կայսեր եւ լսելի կ՚ըլլան։ Անշուշտ այս պատգամաւորութեամբ 338է ի վեր տեւող Յունական-հայկական-պարսկական թշնամական յարաբերութիւններն աւելի սուր կերպարանք կ՚առնուն, բայց որովհետեւ Հայերը՝ Տիրանի վրայ գործադրուած անգթութեննէն գրգռուած՝ Շապուհի դէմ ոտք ելած եւ անոր կուսակիցներն ու մարդիկը վռնտած էին, Շապուհ ստիպուեցաւ զԱրշակ գահ հանել (Aslan, 55)։

Բուզանդ, Գ, իա, պատգամաւորութենէ յետոյ ուրիշ դէպքեր կը կցէ։ Արշաւրեան յաջող պատգամաւորութենէ վերջ Ներսեհ Հայաստան կը յարձակի։ Յոյներն Հայոց օգնութեան կը փութան։ Միացած ոյժով վճռական յաղթութիւն մը կը շահին Բասենի Ոսխա գիւղին մերձ։ Կայսրը “ի վերայ երկրին թողոյր գիշխանս վերակացուս զԱնդովկ եւ զԱրշաւիր, մեծապարգեւ մեծապատիւ մեծարէր, եւ յանձն արարեալ զնոսա ամենայն իշխանացն եւ զաշխարհն նոցա, եւ ինքն կայսրն չու արարեալ գնաց յերկիր իւր յերկիրն Յունաց„։

Այս կռիւը, ինչպէս արդէն յաճախ գիտուած է, պատահած է Ներսեհի եւ Գաղերիոսի միջեւ 297ին։ Բուզանդ սխալմամբ Շապուհի եւ Կոստանդի կը վերագրէ։ Ի՞նչ արժէք տալու է այս պարագային՝ Արշաւրի եւ Անդովկի

մասին ըսածին։ Ես յայսմ կը տեսնեմ ընդհանուր ակնարկութիւն մը այդ երկու անձերու առաջնորդող դիրքին իբր զօրավարք աշխարհին, որ բնական հետեւութիւնն էր Մամիկոնեանց ասպարէզէ քաշուելուն։ Երբ Արշակ ասոնց կը վերադարձնէ իրենց ժառանգական տիտղոսն ու դիրքը, Կամսարականք ալ կը վերստանան իրենց նախկին աստիճանը։ 352ին Ներսէսի ուղեկից է նաեւ Արշաւիր եւ յիշուած է վեցերորդ տեղը (Բուզ. Դ, դ)։

Այնուհետեւ աղբիւրները կը լռեն Արշաւրի մասին։ Ներսէսի ընկերացող 10 սատրապներու մէջ, որոնք անուամբ յառաջ բերուած են Դ, ժա, չեմ գտներ Կամսարականաց անունը։ Այն գնացքը տեղի կ'ունենայ 360 է յառաջ առ Կոստանդիոս (Դաղբաշեան, անդ, 105 յջ.)։ Եթէ Արշաւիր ողջ ըլլար, դժուարին է թէ չուղեկցէր։ Սակայն յամենայն դէպս նա մեռած էր այն փոթորիկէն քիչ յառաջ, կամ այն փոթորկին մէջ, որ Կամսարականներու տոհմային ծառը հիմնովին ցնցեց։

Բայց այն արիւնալից արկածէն յառաջ Խորենացի կը յիշէ ուրիշ Կամսարական մը՝ Ներսեհ, եղբայր Արշաւրի։ Չափազանց հետաքրքրաշարժ դրուագ մը կը հաղորդէ անոր մասին։ Արշակաւանը կործանելէ յետոյ՝ "Արշակայ եկեալ վրացի գնդաւ՝ ժողովէ զսակաւս եւ յիւր մտերմաց, եւ տայ պատերազմ ընդ Նախարարսն ընդ այնոսիկ, խնդրելով զվրէժ ձեռակերտին իւրոյ Արշակաւանու։ Միաբանեալ

եւ նոցա առաջնորդութեամբ Ներսեհի որդւոյ Կամսարայ ընդդիմանան Արշակայ պատերազմաւ։ Եւ հզօր մարտի եղելոյ՝ բազումք յերկաքանչիւրոց կողմանցն անկան, քանզի արք դիպեալ արանց՝ ոչ ոք զպարտութիւն յանձն առնոյր»։ Անպատմական են սակայն Խորենացւոյ Գ. իթ պատմած դէպքերը, որոնք հոս յիշուած թագաւորական-նախարարական կռուին՝ անմիջապէս նախընթաց կամ հետեւորդ են (Դաղբաշեան, անդ, 95 յջ)։ Անպատմական է այն շարժառիթը, որ ըստ Խորենացւոյ կը մղէ զԱրշակ իր նախարարներուն դէմ վրէժխնդրական քայլ առնելու։ Արշակաւանի կործանումը նախարարներու ձեռօք (Խոր. Գ, իէ) անբնական եւ հետեւաբար անհաւանական է (Դաղբաշեան, 93)։ Այսով Ներսեհ Կամսարական մը Դ. դարուն՝ ա՛յն ձեւով, ինչպէս կը ներկայացնէ Խորենացի, կը կորսնցնէ իր պատմական նկարագիրը։

Արշաւիր կը մնայ ուրեմն միակ Կամսարականը, որ Դ. դարու երկրորդ քառորդէն մինչեւ վաթսունական թուականները կը գործէ պատմութեան ասպարէզին վրայ։ Նա կ՚աներեւութանայ անհետ եւ անյիշատակ։ Իբր վարկած միայն կարելի է անոր անհետացումը աղերսի մէջ գտնել իր տոհմին դէմ սարքուած արիւնահեղ կոտորածին հետ։ Այդ մասին Բուզ. Դ, ժթ կը գրէ. «Այլ ահա ի ժամանակին յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս, եւ ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին՝ որ տայր նմա զյանդի-

մանութեան զխրատն, այնուհետեւ ըստ կամաց չարութեանն իւրոյ գնացեալ լինէր նա՝ եւ զբազումս ի նախարարացն կոտորեաց, զբազումս ազգատ արարեալ անճիտեաց, եւ զբազմաց տունս հատանէր յարքունիս։ Բայց զտոհմս կամսարականացն՝ որ էին գաւառաց տեարք Շիրակայ եւ Արշարունեաց, ազգատ առնէր, եւ զգաւառսն ունէր յոստան„։

Մերձաւորապէս միայն հնարաւոր է որոշել թուականը այս արիւնարբու ձեռնարկին։ Հետեւելով Բուզանդայ պատմութեան ընթացքին՝ կը մտիմ զայն 363է, այսինքն հայ-պարսկական պատերազմէն յառաջ ընդ մէջ 360—363 դնել։ Արշակ ո՛չ ժամանակ ունէր եւ ոչ ալ հարկաւոր ոյժը 363 է ետք նախարարներ ջնջելով զբաղելու։ Միւս կողմանէ Բուզանդ կը հաւաստէ, որ կոտորածը տեղի ունեցած է այն ատեն, “յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն„ Ս. Ներսէս, ուրեմն 358 (Մարկուարտ, ՀԱ. 1897, էջ 184)։ Այսու կը ստուգուին կոտորածին երկու եզրները՝ 358/9—362/3։ Ի՞նչ էր պատճառը այս արիւնահեղութեան։ “Անզուսպ նախարարների դէմ կռիւ սկսելով ցանկանում էր իր միապետութիւնն ի վնաս նախարարական իշխանութեան զօրեղացնել„ (Դաղբաշեան, անդ, 111)։ Սակայն ագահութիւնը նուազ ուժեղ շարժառիթ չէր։ Բուզանդ կը դիտէ, որ “զբազմաց տունս հատանէր յարքունիս„, եւ որ մանաւորապէս Շիրակայ եւ Արշարունեաց “զգաւառսն ունէր յոստան„։

Բուզանդայ այս ընդհանուր դիտողութիւնը Խորենացի Գ., լա գիտէ մասնաւորել. «Ի հեռանալ Մեծին Ներսիսի ատեաց Արշակ ամենայն ուխտիցն, զոր եդ ընդ նախարարսն, եւ խնդրեաց զքէն ձեռակերտին իւրոյ Արշակաւանու: Եւ կոտորեաց զբազումս ի նախարարացն, մանաւանդ զազգն Կամսարականաց բառնայր ի միջոյ, չարակնելով ագահեալ յամուրն Արտագերու եւ ի քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ»: Խորենացւոյ յառաջ բերած առաջին շարժառիթը, ինչպէս վերն ըսինք, իրական չէ: Իսկ երկրորդը, ցորչափ որ Արշակի ագահութեան թանձրացեալ ուղղութիւն մը կու տայ դէպի Արտագերս եւ Երուանդաշատ, աւելորդ ընդլայնում մըն է Բուզանդի ընդհանուր ակնարկութեան: Խորենացւոյ այդ գաղափարը բացէ ի բաց կը հակառակի Բուզանդայ, որ Դ., ԺԹ կը շարունակէ. «Թագաւորն Արշակ հրաման տայր յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր, Արտագեր անուն»: Անշուշտ դիտմամբ հակառակ Բուզանդի կը դնէ Խոր. Արտագերս բերդը իբր առարկայ Արշակի աչառկոտ ցանկութեան: Բերդիս շինութեան մասին խօսեցանք վերը, § 2:

### ը) Սպանդարատ:

Արշակ կրցաւ կարճ ժամանակով յագուրդ տալ իր ցանկութեան, որովհետեւ տիրացաւ Շիրակի եւ Արշարունեաց: Բայց Կամսարական տոհմը անժառանգ բնաջինջ ընել չյաջողեցաւ:

կոտորածէն ազատած էր Սպանդարատ, երկրորդ կամսարականը, որուն գոյութիւնն աներկբայ է եւ որ կ'ապրի Դ. դարու երկրորդ կէսին։ Ազատութեան պարագաներուն եւ Սպանդարատի գործունէութեան նկատմամբ մեր երկու միակ աղբիւրներն իրարմէ կը հեռանան։

Բուզանդ Դ, ժԹ, շատ բնական ու արժանահաւատ, եւ նման արկածներու մէջ յաճախադէպ ելք մը մատնանիշ կ'ընէ. “Բայց յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ, Թաքուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն Հայոց Վասակ, որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին„։ Բոլորովին այլազգ է Խոր. Գ, լա. “Եւ ոչ ոք ի նոցանէ ապրեցաւ, բայց Սպանդարատ, որդի Արշաւրի, քանզի ունէր կին Արշակունի, որ եւ բնակեցաւ ի Նորին ժառանգութեան ի կողմանս Տարօնոյ եւ Հաշտենից, իբր տրտունջ զհօրեղբօրէն իւրմէ եղեալ զներսեհէ, որոյ աղագաւ եւ ոչ ի կատարման նոցա դիպեցաւ„։ Այս տարբերութիւնը շատ զարմանալի է երկու մատենագիրներու մէջ, որոնցմէ մին միւսին իբր միակ աղբիւր ծառայած է դարուն պատմութեան համար։ Խեղաթիւրողն է Խորենացի եւ զայն ըրած է դիտումնաւոր կերպով. “Պատմութիւնը այլայլել է Խորենացին չկամենալով նորա ազատարարի՝ Վասակ Մամիկոնեանի անունը յիշել։ Բայց զարմանալի է, որ Խորենացին Վասակի ազնիւ դերը լռութեան տալով, այնու ամենայնիւ յիշում է, որ Սպանդարատը կոտորածից ազատեցաւ Տարօնում (Մամի-

կռնեանների երկրում)„ Դաղբաշեան, անդ, 111։ Բայց այս գաւառով մատնուող հետքն ալ տկարացնելու համար կ՚աւելցնէ “եւ Հաշտենից„։ Եւ շատ բնական է Խորենացւոյ քով Սպանդարատի չափահասութիւնը, եթէ առանց Վասակի օգնութեան պիտի ազատէր։

Խորենացւոյ համեմատ Սպանդարատ որդի էր Արշաւրի։ Բայց հաստատուն պահելով անոր մանկիկ մի փոքրիկ ըլլալը, անհաւանական կը համարիմ Արշաւրի հայրութիւնը։ Արշաւիր 337ին փեսայ էր, եւ Խորենացւոյ համեմատ 325ին արդէն այր կատարեալ։ Անհաւատալի է որ 360ին տա՛կաւին անչափահաս մանկիկ մը թողուցած ըլլայ։ Բուզանդի լռութիւնն ալ նպաստաւոր է Սպանդարատի Արշաւրեան զաւակ չըլլալուն։

Սպանդարատի կնոջ մասին վերը խօսեցանք։

Բուզանդ ոեւէ դրուագ չի հաղորդեր Սպանդարատի կեանքէն, որ ի սկզբան լռին դաստիարակութեանը անցած ըլլալու է Վասակի ձեռքին տակ, հեռու քաղաքական հողէ։ Նոյնը կը հաստատէ Խորենացի, բայց ուրիշ կերպարանք տալով խնդրոյն. “Հանդերձ որդւովքն Շաւարշաւ եւ Գազաւոնիւ եւ բոլոր ընտանեօքն գնաց փախստական ի Յոյնս„ (Գ, լա), նոյն իսկ Տարօնը անապահով գտնելով։

Անյայտ է, թէ որքան ժամանակ կամսարական հողերը ոստանին ենթակայ մնացին։ Թերեւս մինչեւ 368—370, երբ կարեւոր դէպքեր կը պատահէին եւ Հայաստան խռո-

վայրյղ ժամանակ մը կ'անցնէր — Արշակ ու Վասակ կը սպաննուէին, Արտագերից բերդը կը գրաւուէր, Երուանդաշատ եւ ուրիշ քաղաքներ կ'աւերուէին, Բուզ. Դ, ծե — այդ ամէնը պատահած միջոցին Կամսարականաց պայազատը թերեւս հեռու էր իր հողերէն եւ կ'աճէր Մամիկոնեան հովանաւորութեան տակ: Բայց երբ Պապ կը թագաւորէր եւ կարգի կը բերէր «Մուշեղ սպարապետ զամենայն զգունդս Հայոց զօրացն» (Բուզ. Ե, ա), երբ «շինէին զամենայն աւերակսն ի թշնամեացն... եւ թագաւորութիւնն հաղ քան զհաղ նորոգէր, եւ իբր ժամանակին հաղ քան զհաղ յառաջադէմ յաջողէին», այն ատեն ահա հաւանօրէն նաեւ Կամսարականաց կը վերադարձուէին անոնց հօրենական ստացուածքները: Այնուհետեւ Կամսարականք ալ իրենց մասնակցութիւնը կը բերէին ժամանակի շարժումներուն, կը կռուէին Բագրեւանդայ ճակատին մէջ (Aslan, 203), թէեւ Բուզ. Ե, դ անոնց անունը կը լռէ:

Խորենացի հաւան չէ Բուզանդայ լռութեան: Նա կը պատմէ Գ, լզ. Արշակի մահէն ետք Ներսէս Մեծ Թէոդոսէն զՊապ իբր թագաւոր կը խնդրէ եւ կ'ընդունի. «Եւ Մեծին Ներսիսի առեալ զամենայն նախարարսն, որք կամակից էին ընդ տէրութիւնն Պապայ եւ որք ոչ, եւ զապրեալ Կամսարականն Սպանդարատ՝ սոցա միաբանութեամբ ածէ զՊապ յաշխարհս Հայոց»: Այս բոլորը հակապատմական յերիւրանքներ են: Ներսէս Թէոդոսի

հետ գործ չէ ունեցած երբեք։ Ջղապ թագաւորեցնողն եղած է Մուշեղ Մամիկոնեան (Բուզ. Ե, ա), որուն վրայէն լռութեամբ ցատկելու համար անշուշտ Խոր. Ներսէսի կը վերագրէ դէպքը (Դաղբաշեան, անդ, 122)։ Դժուարութիւն չկայ ենթադրելու, որ նաեւ Մուշեղ Սպանդարատի թիկունք եւ հովանի եղած ըլլայ։

Հետաքրքրական է Սպանդարատի կատարած դերը Ձիրաւ դաշտի մէջ, որ խառնուրդն է Բուզանդեան Բագրեւանդի եւ Ատրպատականի ճակատներուն, Բուզ. Ե, դ, ե։ Խոր. Գ, լէ կը նկարագրէ Ձիրաւի ճակատը. “ի խառնակել մարտին՝ պատահէ կամսարականն Սպանդարատ խմբի մեծի, յորում էր քաջն Շիրգիր Ղեկաց արքայ, զգլուխ միջին գնդին պնդութեամբ զտեղի ճակատուն կալեալ։ Եւ յարձակեալ Սպանդարատ, եւ հերձեալ զխումբն, որպէս զշանթահար յերկնից կործանէր զքաջն, եւ զխումբն պատուտեալ՝ ի փախուստ դարձուցանէր„։ Բուզանդ նոյն ճակատամարտը մանր կը նկարագրէ, այնպէս որ այսպիսի մենամարտութեան մը անյիշատակութիւնը դատակնիք է Խորենացւոյ հարազատութեան եւ արժանահաւատութեան, Խորենացւոյ՝ որ շատ տեղ բառական կը հետեւի Բուզանդի եւ հետքերը անճանաչելի ընելու համար միայն դէպքերը կը կերպարանափոխէ։ Բուզանդ “մի նման մենամարտութեան մասին պատմում է, բայց այդ տեղի ունեցաւ Մանուէլ Մամիկոնեանի եւ Մեհրուժան Արծրունու մէջ (Դաղբաշեան, անդ, 128)„։

Ձիրաւի ճակատէն ետքն է, որ, ըստ Խորենացւոյ, կը յաջորդէ կամսարականաց վերահաստատութիւնը իրենց արքայատուր հողերուն վրայ. «Յայնժամ ՚արքայն Պապ դարձոյց ի կամսարականն Սպանդարատ զամենայն ինչ, զոր յափշտակեալ էր հօր իւրոյ Արշակայ, զգաւառն Շիրակայ եւ զԱրշարունեաց, որ լեալ էին ազգին կամսարականաց, ոչ իբրեւ զանիրաւ ագահութիւն հօր իւրոյ Արշակայ, այլ իբրեւ պարգեւս ընդ վաստակոց քաջին Սպանդարատայ, որ սպան զՂեկաց արքայն» (Խոր. Գ., լը): Պատճառաբանութիւնը բաց առնլով՝ մնացածը ինքնին հասկանալի է, այսինքն որ 370է ետք կամսարական հողերը կ՚ազատին ոստանէն:

Սպանդարատէ ետք մինչեւ Վարդանեանները՝ կամսարականաց մասին յիշատակութիւն չկայ հայ ճշմարտապատում մատենագիրներու քով: Ասոր հակառակ՝ անթերի ցեղաբանութիւն մը կ՚ընծայէ Խորենացի: Սպանդարատ իբր որդի Արշաւրի՝ Պերոզամատի գիծը կը շարունակէ եւ իր որդիներով՝ Գազաւոն ու Շաւարշ՝ մինչեւ Ե դար կը հասցնէ տոհմագիծը (Խոր. Գ. լա): Սպանդարատի մահուան մասին Խորենացի եւս կը լռէ, մինչ անոր կարծեցեալ որդւոց նկատմամբ ազատօրէն կը ճարտարամտէ:

Հետեւինք Խորենացւոյ պատմութեան:

Պապի հրաւէրով իրենց հողերու վրայ վերահաստատուելէ յետոյ, երբ հայ թագաւորութիւնը կը կիսուի եւ Արշակ՝ լքելով պարսկական բաժինը կը քաշուի յունական Հայաստան

(Խոր. Գ, խբ), Գազաւոն եւս կը հետեւի Արշակայ: Նա կը մնայ հաւատարիմ վերջնոյս նաեւ այն ժամանակ, երբ Պարսկական Հայաստանն ալ կը ստանայ իր թագաւորը յանձին Խոսրովի: Թէեւ սա կ'աշխատի հեռացած Նախարարներն իրեն ձգել, բայց հրաւէրին չեն պատասխաներ անոնք, որոնց մէջ էր նաեւ Գազաւոն (խգ), «վասն որոյ զժառանգութիւնս նոցա կալաւ Խոսրով յարքունիս հրամանաւ Շապհոյ (!) եւ ոչ եթող զկալուածս որդւոյ ի հայր եւ զեղբօր յեղբայր»: Այսպէս՝ երկրորդ անգամ կը զրկուին կամսարականք իրենց կալուածներէն, Արշակի եւ Խոսրովու միջեւ ծագած պատերազմին մէջ, երբ Արշակ մահուան վտանգի մէջ կը ճօճայ Սահակ Ապետէն հալածական՝ «ահագին նահատակութիւնս ցուցեալ Գազաւոնի, որդւոյ Սպանդարատայ, բազում անգամ դարձեալ յարձակմամբ՝ ցրուէր զհետամուտսն, եւ տայր պարապ ժամ գնալոյ Արշակայ»: Արշակ թէեւ կը զերծանի սրոյ հարուածէն, բայց «հիւանդացեալ մալարայական ախտիւք՝ ջերանի հիւծմամբ եւ մեռանի... Եւ այնուհետեւ ոչ եւս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդէր նախարարաց կողմանցն այնոցիկ քաջն Գազաւոն, եւ յաշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք կոմէսս իշխանս» (Խոր. Գ, խզ): Գազաւոն կ'ըլլայ ուրեմն առաջին կոմէսը, որով սկիզբ կ'ըլլայ Զ—Է դարու կամսարականաց ‘պատրիկ, ‘հիւպատ, տիտղոսներուն (Ալիշան, Շիրակ, 3—4):

Դաղբաշեան չի վարանիր այս ամէնը “մի ազատ յաւելուած Խորենացու կողմից„ հռչակելու (Դաղբաշեան, անդ, 111)։ Իրապէս շատ անմեկնելի պիտի մնար բացարձակ լռութիւնը Բուզանդի (Ե, ա), Փարպեցւոյ (Ա, ը), որոնք Խորենացւոյ բառացի գործածած աղբիւրներն են։ Դիտումնաւոր յաւելուած կը համարի նաեւ Խաղաղթեանց։ Խորենացի, որուն համեմատ Վամսարականք երկրորդ էին յետ արքայի, կամ աւելի ճիշդ, այդպէս կը բաղձար հաւատացնել, կ՚ուզէր մեկնել թէ ինչու 426ին անոնք Ժգ. գահը կը բռնեն։ Դա պատիժն էր Գազաւոնի անհաւատարմութեան։ Նոր յունական ծառայութիւնը, կոմսութիւնը շարժառիթ եղած են իր ամբողջ տոհմին աստիճանական անկումին։ Ահա այս դիտաւորութիւնը ներշնչած է Խորենացւոյ Գ, խգ, խղ գլուխներն ու նաեւ յաջորդ պատմուածքը, որ նոյնպէս բոլորովին անծանօթ է Ղազարի։

Յունական բաժնին նախարարներն յուսախաբ կը դիմեն նամակով (Խոր. Գ, խը) Խոսրովու, առաջնորդ ունենալով ՙՍպարապետ Գազաւոն„, եւ կը խնդրեն անյիշաչարութիւն, կալուածներու վերադարձում, ազատութիւն կայսեր իշխանութենէն, “զի մի վրդովեսցեն զընակութիւնս մեր, որք ունիմք իշխանութիւն յայսմ բաժնի„ ու փոխարէն՝ կը խոստանան հաւատարիմ ծառայութիւն։ Խոսրով նպաստաւոր պատասխան մը կը գրէ, եւ մեծ բարեկամութիւն ցոյց կու տայ Գազաւոնի, զոր “արիւն իմ եւ

հարազատութիւն„ կը կոչէ, եւ “Արշակունի անուամբ„ կը պատուէ։ Գազաւոն “ընդ հուպ դարձուցանէ զընաւ նախարարսն առ արքայն Խոսրով„, որ կը յաջողի (խթ.) նաեւ Արկադիոս (!) շահիլ եւ յունական բաժինն ալ իր թագաւորութեան կցել։ Շապուհ (!) ծայր աստիճան դժգոհած յունա-հայկական այս մերձեցումէն, գահընկէց կ'ընէ զԽոսրով (391)։ Զայս կը հաստատէ նաեւ Փարպեցի, Ա, Թ, սակայն Խոր. աւելին կը հաղորդէ։ Ըստ Խորենացւոյ Խոսրով կը գերուի եւ կը դատապարտուի բանտարկութեան Անուշ բերդի։ “ընդ նմա տարաւ եւ Գազաւոն կապանօք, կասկածեալ յառնն քաջութենէ, եւ զառն նորա հրամայէ ունել յարքունիս, նոյնպէս եւ զեղբօր նորա Շաւարշայ„։ Շաւարշ եւս կը պատժուի, որովհետեւ Պարգեւ Ամատունւոյ հետ 700 հոգւոյ գլուխ անցած՝ փորձած էր “զերծուցանել զարքայն իւրեանց Խոսրով եւ ոչ յաջողեցան ի պարաւանդելոյ ոտից նորա ի շղթայս։ Եւ հզօր մարտի եղելոյ՝ սպանան Շաւարշ...„։ Գլ. ծե, կ'իմանանք, որ Գազաւոնի հետ էր նաեւ որդին Հրահատ։ Գազաւոն կը մեռնի բանտին մէջ, իսկ Հրահատ “յետ հօրն նորա մահուան հանեալ յԱնյիշելի ամրոցէն՝ անդր եւս քան զՍագաստան էր գումարեալ„, եւ անշուշտ նա ալ հոն կը գտնէ իր վախճանը։ Խոր. մոռցած է այդ մասին խօսելու։ Բացարձակօրէն ձրի ենթադրութեամբ Ալիշան զՀրահատ հայր Արշաւրի քաջի (451) կը հռչակէ (Շիր. 4)։ Ալիշանի ուշա-

գրութենէն վերցած է, որ Խոր. Գ, կե, կու-
տայ նաեւ Հրահատայ որդւոյն անունը։ Երբ
Սահակ 426ին կաթողիկոսութեան խնդրով
Դուռը կը ներկայանայ, ի մէջ այլոց կը խնդրէ
«զի դարձուցէ զտուն ազգականին իմոյ եւ
քոյ (Սուրէնեանն պահլաւի), զմանկանն Գա-
զաւոնի զորդւոյն Հրահատայ»։ Ուրեմն Հրա-
հատ ունէր որդի՝ Գազաւոն (հմմտ. նաեւ
Just, Iran. Namenbuch, էջ 425)։ Նոյն առ-
թիւ՝ իբր կողմնակից Սահակայ կաթողի-
կոսանալուն՝ կը յիշէ Խոր. Սպանդարատ Ար-
շարունին։

Բոլորը՝ անուններ ու դէպքեր, որոնք ի
սպառ անյիշատակ մնացած են ժամանակի
պատմագրին՝ Փարպեցւոյ քով, որ իբր մօտե-
րիմ Կամսարականաց՝ չէր կրնար անգիտանալ
կամ լռել։

Արշակունեաց շրջանէն միայն Արշաւիր
Կամսարական (իբր 330—360 գործող) եւ
Սպանդարատ (Դ. դարու երկրորդ կէսին) աներկ-
բայ կերպով պատմական են։ Իսկ ինչ որ լոկ
Խորենացին կը պատմէ, անվերաքննելի է եւ
դիտումնաւոր կերտուածքի բնոյթ ունի։ Եւ
որովհետեւ այդ դիտաւորութիւնը եղած է Կամ-
սարական գահին կեղծ ելեւէջը մէկնել, եւ
մենք Բուզանդի, Փարպեցւոյ եւ Գահնամակի մէջ
անոնց գահը էապէս նոյն եւ անփոփոխ գտանք,
ասով իրաւունք կը ստանանք այդ դիտաւորու-
թեամբ ստեղծուած Խորենացւոյ ամբողջ պատ-
մութեան վրայ տարակուսելու։ Ամէն բան առանց

բացառութեան իբր հարազատ ընդունիլ՝ չափազանց վստահութիւն պիտի նշանակէր հանդէպ պատմահօր անկեղծութեան եւ ճշմարտասիրութեան։ Առ նուազն խոհեմ ու զգոյշ կասկածով վերաբերուելու ենք, եթէ մերժելի ծայրայեղութիւն կը թուի Գաղբաշեանի եւ Խալաթեանցի հետ ամենայն ինչ սուտ եւ մտացածին հռչակելու արմատական ճամբան։

## § 6. Կամսարականները Վարդանանց եւ Վահանեանց հետ (450—506):

Անկարելի է կամսարականաց ցեղաբանօրէն անընդհատ պատմագրութիւնը յօրինել։ Նախընթաց հատուածի մէջ գոնէ Խորենացի աշխատած էր պակասը լեցնել, իսկ Ե. դարու համար նա ալ կը պակսի։ Վարդանեան շրջանին եւ Հայ Արշակունի հարստութեան ժամանակակից կամսարականներու ստոյգ միջնօղակները ծանօթ չեն մեզի։ Ալիշան (Շիր. 4) Գազաւոն—Հրահատ—Արշաւիր (450) տողանցքը կը յօրինէ, բայց առանց դրական ապացոյցի։ Ալիշան ինչպէս նաեւ ուրիշներ մտադիր չեն եղած, որ Հրահատի որդին Գազաւոն է (Խոր. Գ, կե), այնպէս որ 450ի Արշաւիրն աւելի Գազաւոն Բ.ի որդին կրնայ ըլլայ. եթէ Խորենացւոյ յատուկ այդ կամսարականները պատմական են։ Առ այժմ ամուլ բաղձանք կը մնայ աղբիւրներ հիմնելու դիտաւորութիւնը։

ա) Արշաւիր Բ. Կամսարական։

Կամսարականներու պատմութեան ինչպէս առաջին, նոյնպէս երկրորդ շրջանը կը բանայ Արշաւիր մը (Բ.)։ Նա եւս փեսայ է Մամիկոնեանց, ունենալով կին՝ զՎարդանոյշ դուստր Վարդանայ (տ. վերը՝ § 4)։ Արշաւիր գովող եւ ընդասուն էր Մամիկոնեանց, եթէ կարելի է իր որդիներէն՝ հօր նկատմամբ եզրակացնել (Փարպ. Գ, կգ.). եւ հետեւաբար լեցուած էր նոյն գաղափարականներով, նոյն հոգւով ու կորովով։ Նա կը գործէ իբր աջ բազուկ Վարդանայ եւ անոր ամենահաւատարիմ՝ «կամակատար» (Փարպ. Բ, լե) զինակիցը։

450ին, Յազկերտի տրուած պատասխանին մէջ է, որ առաջին անգամ կ՚երեւայ «Տէրն Արշարունեաց Արշաւիր» (Փարպ. Բ, իգ) իբր տասներորդ նախարար։ Նամակին բնական արդիւնքը կ՚ըլլայ սրտմտութիւն եւ զայրոյթ պարսկական, եւ սաստիկ հրաման՝ «զի ամենայն տանուտեարքն եւ աւագ սեպուհքն երեցունց աշխարհացն փութով եւ անխափան ի դուռն եկեսցեն»։ Արշաւիր կ՚անսաստէ այս կոչին, բայց «առանց թողութեանց մահու պատուհաս» չի կրեր, ինչպէս կը սպառնար Յազկերտ (Փարպ. Բ. իե)։ Մինչդեռ «մեծամեծ աւագանին» կորակոր ետ կը դառնար, «ողջք եւ ոչ ողջք, կենդանի կիսամեռք» (Բ, իթ)՝ իրենց գլուխ ունենալով Վարդան, — Արշաւիր կը պահէր իր հօրենական հաւատքը առանց կեղծիքի։ Եւ

այս պատճառաւ է, որ Նա Վասակէն կ՚ընտրուի իբր պատգամաւոր առ Վարդան, որ իր ընտանիքով յունական Հայաստան կը մեկնէր (Բ, Լ)։ Նկատելի է, որ Արշաւրի կ՚ընկերանան Հմայեակ Դիմաքսեան եւ Գազրիկ Արեղեան, որոնք երկուքն ալ ուրացողներու կարգէն չէին։ Տարակոյս չկայ որ Վարդանի դարձին մէջ իր մտերիմը եւ փեսան վճռական ազդեցութիւնը ունեցած է։ Եւ այնուհետեւ իրարմէ անբաժան կը գործեն մինչեւ Վարդանի պսակումը։

Աղուանից մէջ տեղի ունեցած կռիւը (Փարպ. Բ, լե. Եղիշէ, 58, Կաղանկ. Բ, բ) Վարդանի գործունէութեան մուտքը կը կազմէ։ Արշաւիր մասնակից է այն ճակատամարտին. Վարդան «աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զիշխանն Արշարունեաց զԱրշաւիր Կամսարական» (Փարպ, անդ)։ Կ՚արժէ յառաջ բերել այն մանրադէպքը, զոր արձանագրած է Ղազար, անշուշտ ինքնին Կամսարականէն լսելով. «Կամսարականն Արշաւիր եւ Մուշ Սեպուհն Դիմաքսենից, ուր յանգիտութենէ տեղեացն դիպեցան թանձրախոր սաստիկ մօրից, Կամսարականն Արշաւիր եւ Մուշ ի յառաւելապէս դիմեցմանէն երիվարացն անկեալք ի տիղմն հանդերձ երիվարօքն իւրէին, անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսենից Մուշ ի Նիխորականայ։ Իսկ Կամսարականն Արշաւիր իջեալ յերիվարէն՝ ի հետիոտս սպանանէր զՎուրկն, զեղբայր Լփնաց թագաւորին, եւ իւր ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, որ եւ մոյկ

մի զերծեալ յոտանէն թաղեալ մնայր անդէն ի մօրին, եւ ինքն Կամսարականն միամոյկ, տղմաթաթաւ, հանդերձ ամենայն զինուն, հանեալ զերիվարն ի ցամաք՝ անվեհեր քաջաբար նման թռչնոյ յերիվարն հեծանէր, եւ փարհուրեցուցեալ զթեւ իւրոյ կողման թշնամեացն՝ փախստական առնէր...: Իսկ ոմանք յաւագորերոյ Պարսիցն ելեալք ի նաւս՝ յայնկոյս գետոյն մեծի (Կուր) փախստեայք լինել ճեպէին: Որ եւ զԿամսարականն Արշաւիր զիշխանն Արշարունեաց ստիպով փութացուցանէր երանելի զօրավարն Հայոց Վարդան՝ զկնի փախըստէից նաւացն նետաձիգ լինել, ի հաստատաձգութիւն եւ յանվրէպ դիպողութիւն առնն վստահեալ: Իսկ Կամսարականն Արշաւիր, որպէս եւ միշտ կամակատար էր բանի սրբոյ զօրավարին, վաղվաղակի հաւանեալ առ ի նմանէ հրամանին՝ զկնի նաւավարացն եւ փախստէիցն նետաձիգ լինէր: Եւ խոցեալ զնաւավարսն եւ զայլս բազումս ի նաւսն՝ կարեվէրս առնէր, որոց ընդ տապալել վիրաւորացն կործանէին նաւքն, եւ բազումք ի նաւավարացն եւ ի գլխաւորացն Պարսից գետասոյզ եղեալ կորընչէին:“ Պատմական կորիզին վրայ գրչի անհատական յաւելուածներ կ'ենթադրուին: Եղիշէ եւ Կաղանկատուացի միայն կորիզը փոխ առած են:

Վարդանանք Կուրի ափերէն կը դիմեն դէպի Տղմուտ: Աւարայրի ճակատին մէջ Վարդան կենդրոնը կը յանձնէ Արծրունեաց Տանուտէրին եւ Մերշապուհ Մարդպետին՝ “հանդերձ իշխա-

նաեւ Արշարունեաց Արշաւրաւ„ (Փարպ. Բ, լթ)։ Այլազգ կը պատմէ Եղիշէ (Զ. 90) բանակին բաժանումը. “Ցանձն իւր առնոյր (Վարդան) զգունդն չորրորդ, եւ նիզակակից իւր զքաջն Արշաւիր եւ զհարազատ եղբայր իւր զՀամազասպեան„։ Սակայն Փարպեցի կենդանի աղբիւրէն կը քաղէր իր տեղեկութիւնը եւ հետեւաբար նախադասելի է։ Անողոք մահը կը բաժնէ երկու մտերիմները։ Արշաւիր կը մնայ հաւատարիմ Վարդանեան դատին, որ գերազանցապէս ազգային էր։ Շղթայակապ նախարարներուն հետ Արշաւիր ալ “նենգով նուաճեալ„ կը տարուի “ի դուռն Արեացն„ (Փարպ. Բ, խբ)։ Բայց Ատրորմիզդ գոհ չէր եղած կամսարական նահապետով, այլ “տայր խաղացուցանել եւ զտղայսն, զոր կալեալ էր իւր ի տոհմէն Մամիկոնէից եւ կամսարականաց„ (խբ)։ Տիզբոն տեղի ունեցած դատավարութեան մէջ փայլուն ատենաբանութիւն մը կ'արտասանէ Արշաւիր եւ դիմակազերծ կ'ընէ զՎասակ (Բ. խե)։ Վասակ կը գտնէ եղերական վախճան մը, իբր պատիժ իր փառատենչ ծրագիրներուն, որոնք Հայրենիքը արեան լճի վերածեցին, իսկ կղեր ու աւագանի իրենց ազատութենէն կը զրկուին։ Երեսունումէկ նախարարները, որոնցմէ էր Արշաւիր, “հրաման տայր թագաւորն Յազկերտ (438—457) խիստ կապանօք պահել անդէն ի Վրկանի մինչեւ յամս վեշտասաներորդ թագաւորութեանն իւրոյ“, ուրեմն մինչեւ 455/456։ Փարպ. խզ, Արշաւրի հետ կը յիշէ նաեւ Թաթ ու

Վարձ կամսարականները, իսկ Եղիշէ՝ Թաթուլ, Վարձ, Ներսեհ, Աշոտ։ Այլուր յիշատակութիւն չկայ այս անձանց։ «Աշոտ» շատ կասկածելի է։

Արշաւրայ այս գերեկցութեան կը պարտինք այն ծանօթութիւնները զորոնք Փարպ. կը հաղորդէ Բ, ԽԲ—ԾԸ գլուխներով. «Եւ որպէս ստուգիւ եւ ջերմ խնդրով կամսարականին Արշաւրայ հարցեալ ցերանելի խուժիկն, եւ լուեալ ի նմանէ պատմեաց մեզ զխօսս իւրաքանչիւր եւ զվախճան սրբոցն՝ գրեցաք հաւաստեաւ»։

Ցազկերտի մահուան յաջորդող եղբայրադաւ կռուին եւ Որմիզդի խռովայոյզ կարճատեւ թագաւորութեան (457—459) միջոցին Դուռը ժամանակ չունէր հայ նախարարներու վիճակով զբաղելու։ Բայց երբ Պերոզ յաղթանակ կը կանգնէ եւ գահ կը բարձրանայ (459—484)՝ «հրաման ետ արձակել զնախարարսն Հայոց ի կապանաց եւ կարգել նոցա ռոճիկ ի Հրեւ» (Փարպ. Գ, Կ)։ Ղազար յանուանէ կը յիշէ զԱրշաւիր, որ բարեկամութեամբ կը կապուի Ցրզատվշնասպի հետ եւ անով միւս նախարարներու վիճակը թեթեւցնելու ու բարւոքելու կը նպաստէ։ Լիակատար ազատութիւնը սակայն բաւական հեռու էր։ Վեց տարի կը տեւէ տակաւին իրենց գերութիւնը. «յամի վեցերորդի թագաւորութեանն Պերոզի» (Փարպ. Գ, ԿԱ), ուրեմն՝ 465/466ին հայրենիք վերադառնալու թոյլտուութիւն կը ստանան։

Վերադառնալէ յետոյ Արշաւիր վերստին

ձեռք առա՞ւ իր հողերուն տանուտէրութիւնը։ Դժուար է պատասխան մը տալ։ Եթէ մտածենք, որ գերի գացող նախարարներն ի Հարկէ զրկուած էին իրենց կալուածներէն ի նպաստ Դրան, եւ եթէ միւս կողմանէ նկատենք, որ Վահանեան կռիւներու արդիւնքներէն մին էր կամսարական Տանուտէրութեան վերահաստատութիւնը (փարպ. Գ, ղզ), պիտի ստիպուինք հաւանիլ, որ թէ՛ Արշաւիր եւ թէ՛ իր որդիները գոնէ անուանապէս զուրկ էին տանուտէրութենէ, այնպէս որ 452/453—484/485 կամսարական հողերն իրենց բնիկ տէրերուն հովանին չէին վայելեր։ Ալիշան ուրի՛շ պատճառ մը կու տայ Այր. 55. “Ասի Գրիգորի որդւոյ Համայեկայ եղբօր Մեծին Վարդանայ ունել առ ժամանակ մի զՁորն Երասխայ եւ զԿաղզուան, որպէս եւ զՎանանդ եւ զԲասեն, այլ ի յաջողելն Վահանայ միւսոյ եղբօրորդւոյն՝ Ներսեհ կամսարական եւ եղբարքն կալան զժառանգութիւն իւրեանց„։ Ալիշանի աղբիւրն անծանօթ է ինձ, իսկ տեղեկութիւնը դժուարաւ կրնամ իբր հարազատ համարիլ։ Գրիգոր՝ Համայեկի որդին չէր, այլ Վասակայ՝ եղբօր Համայեկի. “Եղբօրորդի Վահանայ„ (փարպ. Գ, ղդ. Կիւլէսէրեան, անդ, 378)։ Թէ ինչ իրաւունքով եւ երբ կրցած է նա այնքան տարածել իր տէրութիւնը, անհասկանալի է ինձ ու ժամանակակիցները լուռ են։

Դարուն պատմագիրը ոչինչ կը գրէ վերադարձող Արշաւրի հրապարակային գործունէութեան մասին։ Միայն թէ չի մոռնար քանիցս դի-

տել տալու, որ ինքը բարեկամական յարաբերութիւններ մշակած է կամսարականին հետ, որուն խօսակցութիւններէն կը քաղէր նա Ե. դարու պատմութեան առատ նիւթ։ Զարմանալի կերպով սակայն պատմագիրը չի նշանակեր, թէ որքան երկարաձգուած է իր անձնական կենակցութիւնը Արշաւրի հետ, եւ թէ հետեւաբար նա որքան ապրած է իր վերադարձէն յետոյ։ Ղազար այս մասին ընդհանուր դիտողութիւն մը կ'ընէ, զոր կրնանք մերձեցնել նաեւ մեծ կամսարականին։ Վերադարձած նախարարները, կ'ըսէ պատմագիրը, "կեցեալք իւրաքանչիւր ոք ըստ սահմանելոյ ի Տեառնէ՝ վախճանեալք թաղեցան ի գիրս հարց իւրեանց խաղաղութեամբ ըստ Աստուծոյ հաճոյից, օրհնեալք ամենեքեան ի բերանոյ սուրբ կաթուղիկոսին Գիւտայ"։ Եթէ նաեւ Արշաւիրն կամսարական թաղողն եղած է Գիւտ, ուրեմն անոր մահը պատահած է ընդ մէջ 470ի եւ 480ի։ Այս 10 տարիներու անջրպետն աւելի անձկացնելու կռուան չունիմ։

### բ) Սահակ, Ներսեհ, Հրահատ։

Փարպեցին, յառաջ քան ծանուցանելը Արշաւրայ որդիներուն անուններն ու թիւը, ինչ ինչ ծանօթութիւններ կը հիւսէ իր պատմութեան մէջ անոնց մանկութեան մասին։ Տղայ տիոց տեսած էին անոնք գերութիւն ու տառապանք (Բ, խգ)։ Մինչ նախարարներն օտարութեան մէջ թէեւ անբախտ, բայց գոնէ որոշ

վճռոյ մը կ'ենթարկուին, Արշաւրայ ինչպէս նաեւ ուրիշ շատերուն զաւակները կը մատնուին անորոշ վիճակի։ Յազկերտ “զողջոյն եւ զմանկունսն ի տոհմէն Մամիկոնէից եւ Կամսարականաց եւ որք յայլ տոհմէն՝ հրամայէր անօրինին Միհրներսեհի տալ ի բաց ուսմ եւ կամեցի„ (Բ, խե)։ Անդրագոյն մանրամասնութիւններ կը պակսին, սակայն Գ, հբ կը ցուցնէ, որ Կամսարական պայազատներն ալ մայրական գորովագութ հոգացողութենէ ի սպառ զրկուած չէին շնորհիւ Մամիկոնեաններուն, որոնց հետ միասին մարմնով եւ հոգւով կը կրթուէին, եւ կը պատրաստուէին իրենց հօր նման՝ քաջութեան, անձնանուիրութեան եւ հաւատարմութեան տիպարներ դառնալու։ Ե. դարու ինչպէս Մամիկոնեան նոյնպէս Կամսարական դիւցազները՝ Զուիկի դաստիարակութեան պտուղներն են։ Ղազար, Գ, կգ, յատկապէս կը նշանակէ, որ Հմայեկի զաւակները “նմանեցուցեալ ինքեանց ի յառաջանալ փութային եւ զորդիս երանելոյ Կամսարականին Արշաւրայ Տեառն Արշարունեաց, որք եւ ազգախառն իւրեանց էին ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ, խրատել եւ հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան եւ արուեստի ջանային„։ Միեւնոյն կաղապարով դարբնուած ըլլալով՝ զարմանալի չէ, որ Արշաւրայ հայրանման (Գ, կթ) զաւակներն իրենց ամբողջ հոգւովը կը յարին Մամիկոնեան երկրորդ մեծ դիւցազնին՝ Վահանայ, մնալով “անքակ ի նմանէ եւ միաբան„ (Գ, հե)։ Երբ

482/483ին Հայերն ապստամբիլ կը վճռեն եւ Վահան յանձնառու կ'ըլլայ շարժման գլուխ անցնիլ, իրեն հետ են կամսարական եղբայրները՝ (Գ, հա)՝ Արշաւրայ որդիները։ Ասկէ ետքն է որ Ղազար անուններով կը սկսի խօսիլ եւ կը յայտնէ Արշաւրի որդիներուն թիւը։

Վերջին կէտին նկատմամբ տարակոյսի ոեւէ հնարաւորութիւն կ'արտաքսէ Ղազար՝ երեք անգամ բացայայտ դնելով Վահանի գործակից կամսարականներու թիւը “երեքին եղբարքն կամսարականք„ (Գ, հդ.) “երեքեան կամսարականքն, որդիք երանելւոյն Արշաւրայ„ (Գ, ճգ.) “զերիս եղբարսն որ ի կամսարական տոհմէն էին„ (Գ, յղ)։ Սակայն թուական այս ստուգութիւնը կարծես կը խախտի, երբ Ղազար չորս անուն կը յիշէ իբր որդի Արշաւրայ. Գ, հա կ'ըսէ. “Վահան, Ներսեհ, Հրահատ„, եւ Գ, ղ. “զՍահակ կամսարական, զերանելւոյ զԱրշաւրայ զորդի„։ Բայց անկարելի է հաշտուիլ սա գաղափարին հետ, թէ Ղազար իր սիրած ու պաշտած կամսարական եղբայրներու թիւը երեք անգամ սխալ հաղորդած ըլլայ։ Ջամչեան մտադիր չէ եղած այս գոնեայ առ երեւոյթս հակասութեան եւ իբր տարբեր անձինք կը յիշէ Վահան (Բ, 165), Սահակ (Բ, 201) եւ միւս երկուքը։ Անոր հետեւելով նաեւ Justi, էջ 425, չորս որդի կու տայ Արշաւրի։ Ալիշան հաւանական կը համարի Սահակի եւ Վահանի նոյնութիւնը (Շիր. 4)։ Սովորական էր մէկ անձի երկու անուն տալ, եւ այս կողմանէ Ալիշանի փար-

կածը դժուարութիւն չի բովանդակեր, բայց եւ այնպէս ես կը միտիմ փարպ. Գ., հա՝ ՎԱՀԱՆԱԻ՝ կարդալ ՍԱՀԱԿԱԻ: Եղբարց երեքութեան եւ “Սահակ„ի ճշդութեան կը վկայէ նաեւ Անանիա Շիրակացի, որուն ԻԱ. Առեղծուածը կը ճանչնայ՝ Ներսեհ կամսարական՝ որդի Արշաւրայ եւ իր եղբայրները՝ Հրահատ ու Սահակ (Գ. Տէր-Մկրտչեան, Ա. Շիրակացի, Վաղարշապատ, 1896, 25—26):

Կայ ուրիշ հարց մը եւս, այն է՝ երիցութեան կամ աւագութեան հարցը: Ներսեհի եւ Հրահատի աղերսը ճշդել դիւրին է: Փարպ. Գ., կը, կթ, հա եւն. միշտ նախ զՆերսեհ եւ ապա՝ սիրելի եղբայրը՝ զՀրահատ կը դնէ, ինչ որ Ներսեհի երիցութեան մատնցոյց կը համարիմ: Բայց արդէն այս կէտը տարակուսի նիւթ չէ եղած երբեք: Դժուարութիւնը Սահակի մասին է: Չամչեան՝ կրտսեր եղբայր Ներսեհի կը կոչէ (Բ. 201): Ալիշան իրաւամբ համամիտ չէ Չամչեանի (Շիր. 4—5), քանի որ անոր կարծեաց նպաստաւոր ոեւէ տեղիք չկայ մատենագրութեան մէջ. անոր ի նպաստ կը խօսի միայն սա հանգամանքը, որ իբր թէ Սահակ “ոչ կոչի Տէր Շիրակայ եւ Արշարունեաց„ (Շիր. 5), որ Ներսեհի սովորական տիտղոսն է Փարպեցւոյ մօտ: Ալիշան դժուարութիւնը կը հարթէ սա ենթադրութեամբ, որ “այլ ինչ պատիւ եւ իշխանութիւն„ ունեցած ըլլայ Սահակ: Բայց ենթադրութիւններու հարկ չկայ, որովհետեւ Սահակ եւս՝ Տէր “Արշարունեաց„ յորջորջանքը կը կրէ Բար-

գէնի թուղթին մէջ (Գ. Թղթոց, 42)։ Սակայն այդ թուղթը գրուած է 507—508ին, երբ կրնար Ներսէս մեռած կամ հրաժարած ըլլալ տանուտէրութենէ։ Կը խոստովանիմ, որ Փարպեցւոյ քով Տանուտէր է Ներսէս։ Իբր երէց՝ Սահա՛կ իրաւունք ունէր նախապատուութեան։ Ու Սահակի երիցութիւնը ստոյգ է. Փարպ. Գ, հա նախ կը դնէ Վահան, զոր Սահակ կը կարդամ, եւ ապա Ներսէս։ Անանիա Շիրակացի վերոյիշեալ առեղծուածին մէջ զՆերսէս կը կոչէ Տանուտէր, զօրավար. Հրահատի համար կ'ըսէ՝ “եղբայր իւր կրտսեր”, իսկ Սահակի մասին՝ “աւագ եղբայր իւր”։ Ուրեմն Ներսէս միջին էր, եւ հակառակ իր այս դիրքին բարձրացած էր տանուտէրութեան աւագ եղբօրմէ յառաջ՝ մեզի անծանօթ պատճառով։

Այս երեք եղբայրները, մանաւանդ Ներսէս եւ Հրահատ, քնքուշ սիրով կապուած էին Փարպեցւոյ, որ ամէն անգամ երախտագիտական յատուկ շեշտով մը անոնց անունները կու տայ։ Արշաւրայ բարեկամական զգածումները անցած էին որդիներուն։ Փարպեցի քանի մը տարի “ի Հոռոմս” ապրելէ վերջ՝ Կամսարականներու մօտ կը գտնէր հանգիստ բնակութիւն “յամենայն ամբոխսն մինչեւ յամս նուաճման ձերոյ”, խռովայոյզ տարիներուն մէջ։ Ներսէս եւ Հրահատ “ի պէտս դարմանոց եւ հանդերձոյ եւ ձիոյ” տարեկան հասոյթ կը սահմանէին Փարպեցւոյ, որուն կեանքը, մասնաւորապէս “զառաջին կեղոյն իմոյ զվարս”, անոնց քաջ ծանօթ էր (Փարպ.

Թուղթ. 187, 188, 196)։ Ներսեհ՝ նման իր Հօր՝ մանր պատմած է Փարպեցւոյ ժամանակակից անցուդարձերը, զորոնք հաւատարմաբար գրի առած է պատմագիրը։

Տեսնենք ուրեմն երեք կամսարականներու կեանքին առ այժմ միակ ծանօթ այդ մասը։

482/483ին հայ աւագորեարը կը վճռէ պատերազմ։ Շարժման ոգին կը կազմէ Վահան Մամիկոնեան, նա կ՚ընտրուի զօրավար, իրեն թիկունք կ՚ըլլան կամսարականները։ Առաջին բախումը տեղի կ՚ունենայ Ակոռի գիւղը (Գ, ՀԹ)՝ առանց Վահանի, բայց ազդու գործակցութեամբ Ներսեհի եւ Հրահատի։ Ատրվշնասպ է ոսոխը, որուն դէմ պիտի մաքառի Հայերու չորսհարիւր հոգիէ բաղկացած խումբը։ Հայերը կը բաժնուին չորս առաջի. «ընդ մէջ երկոցունց մասանցն զքաջն եւ զընտիրն զիշխանն Շիրակայ զՆերսեհ Կամսարական եւ զնորուն եղբայրն զՀրահատն պատրաստական յօրինէին, զի որ կողմն տկարասցի՝ ասեն, նոցա հասեալ փութով զօրացուցեալ օգնեսցեն, եւ յամենայն կողմանց ուժ լինիցին»։ Առանձինն վստահութեան ապացոյց էր այդ կարգադրութիւնը. «քանզի ամենեքեան վստահ էին ի յարսն՝ որպէս ի լաւս եւ յարդարս եւ յուխտապահս»։ Հակառակ Գարջոյլի վատութեան՝ բախտը կը ժպտէր Հայերու։ Դէմ առ դէմ ճակատելով յաղթելէ յուսաբեկ՝ Գարջոյլ թիկունքէն յարձակում կ՚ընէ կատղած գունդով, բայց բանակին արթուն հսկիչները՝ երկու կամսարականները «դի-

մեալ յարձակէին ի վերայ անչափ բազմութեան՝ սակաւ արամբք»։ Ներսեհ «Հարեալ Նիզակաւ անդէն ի տեղւոջն սատակէր» Կատշաց զօրագլուխը։ Յաղթութիւնը Հայոց էր։

Ակոռիի կը յաջորդէ Ներսեհապատի կռիւը՝ գարնան (գ, հա)։ Բանակին ձախ թեւը կը յանձնուի Կամսարական երեք եղբայրներուն՝ Վահանայ (Սահակայ), Ներսեհի եւ Հրահատի։ Օրուան յաջողութիւնն էապէս ասոնց կ'ընծայէ Ղազար։ ԶԱտրվշնասպն Տապեան կը սպաննէ «Տէրն Շիրակայ Ներսեհն Կամսարական»։

Չախող էր ելքը այն կռուին, որ տեղի ունեցաւ Կանգարքի մէջ։ Պարսից դէմ միացած էին Հայերն ու Վրացիները, որոնց թագաւորին խաբէական խոստումները Նկատմամբ Հոնական օգնութեան՝ արգելք եղած էին պարտուպատշաճ պատրաստութիւն տեսնելու (գ, հդ)։ Անձնական քաջութիւնը միայն՝ պատրաստութեան անբաւականութիւնը պիտի փոխարինէր։ Միջին թեւը իր վրայ կ'առնու Վահան «երեքումբք արամբքն որդւովք եղանելւոյն Արշաւրայ»։ Թէեւ ասոնք «դիր եւ տար արարեալ դարձուցանէին ի փախուստ» Կուրէն անդին վանելով Պարսիկները, սակայն Հայ քաջերէն շատերը կ'իյնան, Հրահատ Կամսարական կը գերուի եւ կը տարուի Միհրանի քով։ Հայ բանակը լքուած՝ կը նահանջէ։ Վասակ Մամիկոնեան երկոքումբք որդւովքն Կամսարականին Արշաւրայ կը շարունակէ իր շահատակութիւն-

ները, բայց կը սպաննուի։ Վահան կը ստիպուի Տայք ապաստանիլ, եւ իրեն հետ՝ Սահակ ու Ներսեհ (հե)։

Միհրան բանակցութիւն կը սկսի Վահանի հետ, բայց Դուռ կոչուելով՝ իսկոյն ճեպով կը կատարէ հրամանը եւ իրեն հետ կը տանի “զկապեալն Հրահատ”։ Ներսեհ, որ եղբօրը գերութենէն ի վեր անմխիթար էր, հաւատարիմներով կը հետեւի պարսիկ կարաւանին եւ Բագաւանի մէջ կը յաջողի “հանել զկապեալն Հրահատ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն” (Գ, հզ)։

Աւելի վճռական՝ եւ Պարսից համար համեմատաբար նպաստաւոր կռիւ մը կը մղէ Ջարմիհր Հազարաւուխտ։ Նա յեղակարծ յարձակում կը գործէ Վահանեան գնդին վրայ. Վահան կը բռնադատուի քաշուիլ “յամուր տեղիս սահմանացն Խաղտեաց” միշտ հալածուելով Պարսկէն։ Հազարաւուխտի նպատակն էր ձերբակալել կամ սպաննել զՎահան, այդ նպատակին չի հասնիր, բայց Շաղագոմքի մէջ “ըմբռնեալ տանէին ի բանակն Պարսից” Ներսեհի եւ Հրահատի տիկինները (Գ, հթ)։ Հազարաւուխտ իր պաշտօնը կը փոխանցէ Շապուհի (ձ), որ տիկինները փոխադրել կու տայ “յամուր բերդն Բասենոյ. զոր Բողբերդն կոչեն”, եւ կը պատուիրէ բերդակալներուն “բազում զգուշութեամբ պահել ըստ օրինացն քրիստոնէից զնոսա սրբութեամբ”։ Շապուհ կ'օգտուի այս մեծարժէք որսէն՝ եւ կը փորձէ քաջ կամ-

սարականներուն հաւատարմութիւնը։ Կը հրապուրէ զանոնք զՎահան սպաննել եւ փոխարէն կը խոստանայ յանցանաց թողութիւն յարքունուստ, կանանց ու կրօնի ազատութիւն։ Արդար զայրոյթով կը մերժեն այդ վատ առաջարկը, եւ „ինքեանք եւս առաւել քան զառաջինն անձամբ եւ զայլս յորդորելով փոյթք եւ պատրաստք էին արբանեկութեան զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի՝ զամենայն գործ, զոր եւ հրամայէր նոցա„։ Շապուհ ալ նման իր նախորդին հետամուտ է զՎահան ձերբակալելու։ Արծաթիի մերձ յանկարծածագ գուպարած մը, որուն ոգին է Ներսեհի դայեակորդին Խուրս, կը վերջանայ ի նպաստ Հայոց, որոնց առաջնորդ էին Մուշեղ Մամիկոնեան եւ Ներսեհ Կամսարական (Գ., ձա)։

Վահանեան բանակը անգամ մը եւս անսպաս եւ ուժգին յարձակումի կ'ենթարկուի Շտէոյ գիւղի մօտ։ Հայերէն շատերը դասալիք կ'ըլլան։ Միայն ամենաընտիրները, որոնց մէջ են „երեքեան Կամսարականքն, որդիք երանելոյն Արշաւրայ, իւրեանց երկուք կամ երիւք դայեկօք„, չեն դեդեւիր դիւցազնաբար կռուելու։ Գդիհոն Սիւնի կը մեռնի իբր մատնիչ (Գ., ձգ)։ Շապուհ ահարեկ կը քաշուի Բասենի Աղուար գիւղը, եւ հոն ընդունելով Դուռ դառնալու հրաման (ձե), կը հեռանայ (ձզ)․ „Բայց զկանայս Կամսարականացն թողեալ Շապհոյ անդէն ի Բողբերդի՝ յանձն առնէր բերդակալին, ստէպ պատուիրելով՝ բազում զգուշութեամբ պահել

եւ առաւելապէս սրբութեամբ, ըստ օրինի քրիստոնէից կարգի»:

484/485ին Վաղարշ գահ կը բարձրանայ: Վահանեան խումբին եւ հայ ազգին համար նոր շրջան մը կը սկսի: Վահան կը յաջողի իր հետապնդած նպատակն իրագործել եւ տարիներէ ի վեր աւեր երկրին խաղաղութիւն բաշխել: Սակայն նա իր ճիգերը պսակուած չի նկատեր առանց իր անխոնջ գաղափարակիցներն ու մարտընկերները վարձատրուած տեսնելու: Երբ Վահան Վաղարշէ կը ստանայ Մամիկոնէից Տանուտէրութիւնն ու Հայոց Սպարապետութիւնը (Գ., ՂԶ), կ'ուրախանայ, բայց արքայից արքային, որ կը հարցափորձէր իր բաղձանքներու մասին, դիւցազնական սրտին վայել սա վեհանձն պատասխանը կու տայ. «Այսս մեռեալ տեսանեմ զեռ... Զի եթէ էր եւ հնար շնորհել ձեզ զտանուտէրութիւնն կամսարականին՝ ապա բովանդակապէս շնորհեալ ի ձէնջ՝ տեսանէի զմեռելութիւն ամենայն անդամոցս կենդանացեալ»: Վաղարշ կը զիջանի. «Եղիցի վասն քո տուեալ զտէրութիւն կամսարականին»:

Մինչեւ հոս կը հասցնէ զմեզ Ղազար Փարպեցւոյ պատմագրութիւնը: Նա այլեւս տեղեկութիւն չի տար յաջորդող տարիներու մասին, երբ Կամսարականք իբր իրական Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց կը նուիրուին իրենց հողերուն հոգածութեան, Ղազար եւ ոչ իսկ բացայայտ կը դնէ, թէ որ Կամսարականին կը տրուի տէրութիւնը: Բայց նախընթաց պատմու-

թիւնը կռուան առնելով կարելի է դրանց երկմտանքի Ներսեհի մէջ տեսնել խնդրոյ առարկայ կամսարականը։ Այս կարծեաց կը նպաստէ Ներսեհի կեանքէն այն դրուագը, որու մասին կը գրէ Անանիա Շիրակացի։ Սա կ'անուանէ զՆերսեհ՝ "որդի Արշաւրի անուանակից եւ նախնի այսմ Ներսեհի„ (ԻԱ. Հարցումն, անդ, էջ 25)։ Նօտրատիպ բառը մատնցոյց է, որ երկու Ներսեհները նման էին իրարու ոչ լոկ անուանով, այլ նաեւ դիրքով ու պաշտօնով։ Արդ որովհետեւ Է. դարու Ներսեհը էր Տէր Շիրակայ եւ Արշարունեաց, նոյնը կ'արժէ ի հարկէ նաեւ իր անուանակցին եւ նախնոյն համար՝ Ե. դարու վերջը։

Ե. դարու Ներսեհիս կը պատկանին պատերազմական այն գործառնութիւնները, որոնց պատահական յիշատակը պահած է Շիրակացի. ԻԱ. Հարցումն. Ներսեհ կամսարական որդի Արշաւրի, անուանակից եւ նախնի այսմ Ներսեհի, ի յաղթել պատերազմաւ Բաղըրճացն առնու գերի սատրիկ յոյժ: Եւ հասեալ ի դուռն արքունի ընծայեցուցանէ Թագաւորին Պարսից զհասարակ գերւոյն։ Եւ թուեալ զհասարակն՝ եւս ընծայէ որդւոյ արքային զէ. մասն։ Եւ հրաժարեալ ի նոցանէ դառնա[յ] յաշխարհն իւր։ Եւ եկեալ ի տուն դարիկպետի՝ յոյժ մեծարի ի նմանէ, ոչ որպէս զնախարար, այլ որպէս զմի ոք ի Թագաւորաց։ Եւ սա տայ նմա զԸ. մասն գեր[ւ]ոյն։ Եւ եկեալ առ սպայապետն, զոր Խորաւարանն կոչեն, եւ առա-

ւել եւս ի Նմանէ մեծարեալ՝ տա[յ] Նմա զԺԴ. մասն գեր[ւ]ոյն։ Եւ եւս յառաջ եկեալ հասանէ յաշխարհ իւր՝ եւ ընդ առաջ լինի Նմա եղբայր իւր կրտսեր Հրահատ, եւ տա[յ] Նմա զԺԴ. մասն գերւոյն։ Եւ եւս յառաջ եկեալ՝ ընդ առաջ լինին Նմա ազատքն Հայոց եւ տայ Նոցա զԻՆ մասն գերւոյն։ Եւ եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցին զԺՁ. մասն գերւոյն։ Եւ եկեալ Սահակ աւագ եղբայր իւր՝ տա[յ] Նմա զԻ. մասն գերւոյն։ Եւ իւր մնաց ՇՀ անձն։ Արդ գիտեա՛, թէ ընդ ամենայնն քանի՞ է լեալ։ — Լուծումն իմ՝ Հարցմանն. լեալ էր ընդ ամենայն գերին ՍՄԽ (անդ, էջ 25, 28)։ Անանիայի տուած լուծումը սխալ է, բայց կարեւորութիւն չեմ տար, վասն զի կը կարծեմ որ գերւոյն բաժանման պարագաները ինքնահնար են։ Ճիշդ է, որ Ներսեհի ժամանակակից Թագաւորը՝ Կաւատ (488—531) ունէր որդի մը՝ Խոսրով. Ներսեհի եղբայրները ալ համեմատ են ժամանակակից պատմութեան, իսկ բուն իրողութիւնը վերաքննելու հնարաւորութիւն չունինք։ Դժուար է մտածել, որ Ներսեհ՝ իբր Տէր Շիրակայ աւիթ ունեցած ըլլայ օտար ու հեռաւոր ազգի մը դէմ առանձինն պատերազմ մղելու, ինչպէս Անանիա ենթադրել կու տայ։ Բահղեճաց, կամ՝ ըստ տարբերակին՝ Բախլըճեացն ազգը՝ անուամբ կը յիշեցնէ Բահլ Շահաստանի կամ Բաշխ (Սեբ. Բ, ժը. Marquart, Eranšahr, յաճախ)՝ Քուշանաց երկրին մէջ։ Քուշանները ինչ գործ

ունին ուղղակի եւ միայն կամսարականաց հետ։ Թերեւս Վերսեհ մասնակցած ըլլայ պատերազմի մը, զոր կը մղէր Կաւատ հիւսիսականաց դէմ։ Այսպիսի առիթներ կը ներկայանային թէ 503/504ի (Marquart, անդ. 63) եւ թէ 515ի յարձակումներով։ Վերջինս կը տարածուէր մինչեւ Հայաստան ու Փ. Ասիա, մինչ առաջինը սահմանափակուած մնաց Կովկասի վրայ, ուր փոխադրած էր Կաւատ իր ուժերը։ Եթէ Անանիա հիւսիսային 503/504ի պատերազմը կ'ակնարկէ, այն ատեն շատ ընդհանուր առումով կիրարկուած է ազգին անունը, որ այն ձեւով այլուստ ինձ անծանօթ է։

Վերսեհի տանուտէրութեան տեւողութիւնը կարելի է մերձաւորապէս ստուգել, եթէ իբր սկզբունք ընդունինք, որ Տէր տիտղոսը առանձնայատուկ էր իշխող կամսարականին։ 507/508ին Արշարունեաց Տէր կը կոչուի Սահակ կամսարական (Գիրք Թղթոց, 42), եւ եթէ Վերսեհի պատերազմի նկատմամբ յայտնած վարկածս ուղիղ է, կը հետեւի որ ընդմէջ 504ի եւ 506ի կը պատահի Վերսեհի կամ մահը կամ հրաժարումը ի նպաստ Սահակի, որ իբր աւագերէցը արդէն ունէր իրաւունք տանուտէրութեան, բայց անյայտ պատճառներով թողուցած էր զայն իր եղբօր։

Սահակի տանուտէրութեան մասին շատ բան չենք գիտեր։ Նա մասնակից էր Բաբգէն կաթողիկոսի կրկին նամակներուն (Գիրք Թղթոց, 42—48)։

Սահակ իր անուան անմահ կոթող մը կանգնած էր իր տանուտէրութենէն յառաջ՝ Ս. Սարգսի վկայարանով, Ցեկորի վանքին մերձ։ Հիմնարկութեան արձանագրութիւնը, զոր նա ժամանակի սովորութեան համեմատ փորագրել տուած էր մերձակայ Ս. Երրորդութիւն եկեղեցւոյն վրայ (Թորամանեան, Ցեկոր, 98—103), հետեւեալն է.

Ա. Տող՝ ՊԻՍԿԱ⌈Պ⌉ՈՍԻ ԵՒ ՏԱՑՐՈՆԻ ՏԵ-
ԿՈՐՈՑ ՎԱՆԱՑ ԵՐԻՑՈՒ ԵՒ Մ⌈Ա⌉-
ՆԱՆ⌈Ա⌉Ց ՀԱԶԱՐԱՊԵՏԻ ՈՒՐԱՆԱՑ
ՀՌՈՒՈՄԻ ՈՐ Շ[Ի?]

Բ. Տող՝ ԵՒ ՀԻՄՆԱՐԿԵՑԱՒ ՏԵՂԻՍ Ի ՁԵՌՆ
ՅՈՀԱՆՆՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒ-
ԹԵԱՆ ԵՒ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՐՇԱՐՈՒ-
ՆԵԱՑ[Ն]

Գ. Տող՝ ՑԻՒՐ ԲԱՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՈԼՈՐ
ԱԶԳԻՆ ԵՒ ԱՄՈՒՍՆԻ ԵՒ ՈՐԴԵԿԱՑ
ԵՒ ՍԻՐԵԼԵԱՑ ԵՒ [ԱՂԲԵՐԱՑՆ
ԻՒՐՈՑ]

Դ. Տող՝ ՍՐԲՈՅ ՍԱՐԳՍԻ

Ե. Տող՝ ՍԱՀԱԿ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ ՇԻՆԵԱՑ
ԶԱՅՍ ՎԿԱՅԱՐԱՆ։

(Մառ, Христ. Вост. 1914, էջ 71, տխտ. I—II. տես նաեւ Գարեգին Յովսէփեան, Շողակաթ, 171—172, Կոստանեանց, Վիմ. Տար. 1 եւն)։

Դժբախտաբար իր սկզբնական ձեւին մէջ

չի ներկայանար մեզ սոյն արձանագրութիւնը, որուն թուարկումը մեծարժէք է թէ՛ հայ յուշակերտներու եւ թէ՛ հին-քրիստոնէական ճարտարապետութեան պատմութեան համար։

Նորոգութեան կամ՝ տեղափոխութեան առթիւ արձանագրութիւնը տուժած է իր հարազատ ձեւն ու ոճը։ Անուններ մոռցուած ու աղճատուած, նոր՝ Ե. դարուն խորթ բառեր ներս սպրդած, տողերը բոլորովին խանգարած են այն փոփոխութեան պատճառաւ, որ Է. դարէ յետոյ միայն կրնայ տեղի ունեցած ըլլալ (հմմտ. մանրակրկիտ քննութիւնը Մառի, Къ Датировкѣ ктиторской надписи Текорскаго храма, Христ. Вост. 1914, 56—71)։ Արձանագրութիւնը վարէն վեր կարդալով Մառի հետ՝ աւելի կը մերձենանք նախկին ձեւին։ Սակայն հակառակ այս ձեւափոխութեան՝ բովանդակութիւնը մնացած է հարազատ։ Ու հիմնուելով երկու Յովհաններու զուգադիպութեան վրայ (Յովհան Մանդակունի՝ 480—501, Յովհան Արշարունեաց եպիսկոպոս՝ 490/494—501/505), արձանագրութենէն կը հետեւի որ Ս. Սարգսի վկայարանը կանգնած է զմեզ զբաղցնող Սահակ Կամսարական եւ թէ զայն կանգնած է իբր 486—500 (տես յօդուածս՝ Եպիսկոպոսք Արշարունեաց եւ Տան Կամսարականացն, ՀԱ. 1924, էջ 26—27)։ Զարմանալի չէ, որ Սահակ Տէր Շիրակայ տիտղոսը չի կրեր հոս, քանի որ Ներսեհ էր այն միջոցին Կամսարականաց Տանուտէրը։ Ուստի այս կողմանէ արձանագրութեան

դէմ առարկութիւն չէ կարելի ընել: Աչքի կը զարնէ “Ամուսնի եւ որդեկաց„ անանուն եւ հաւաքական յիշատակութիւնը, ինչ որ հակառակ է Է. դարու արձանագրական ոճին: Կամ նախկին արձանագրութեան մէջ ալ զանց առնուած էին անունները — եւ այս անհաւանական չէ, քանի որ Ե. դարու արձանագրական ոճը Է. դարու կատարելութիւնը չունէր անշուշտ — եւ կամ յետին օրինակողները անարդարանալի անփութութեամբ լռած են, որ սակայն բոլորովին հեռու է հաւանականութենէ:

Սահակի մասին անդրագոյն տեղեկութիւններ կը պակսին:

Հրահատ Կամսարական բացի Ղազարէ եւ Անանիայէ ոչ մէկ տեղ կը յիշուի: Ալիշան կը գրէ (Շիր. 4). “Հրահատն Արշաւրեան երեւի յետ մահուան երիցու եղբօր իւրոյ Ներսեհի կալեալ զտանուտէրական բարձն, զի... Սահակ... ոչ կոչի Տէր Շիրակայ„: Այս կարծիքն ուղիղ չէ, ինչպէս տեսանք: Սահակ կը կոչուի “Տէր Շիրակայ„ եւ Ներսեհէ ետք կ'ըլլայ Տանուտէր, իսկ թէ Հրահատ եղած է երբեք տանուտէր — Սահակէ վերջ — անհնար է ստուգել: Ալիշան կը շարունակէ. “Ոչ գիտեմ, վերոյիշեա՞լն Հրահատ որդի Արշաւրի, եթէ այլ ոք է, որ ի տապանագրին կոչի Պատրիկ, եւ որդի նորա Արտաւազդ՝ Ապիհիւպատ Պատրիկ„: Այս հարցումը ժխտական կերպով կը գտնէ իր լուծումը: Տապանագիրը Ը. դարու կը պատկանի: Այդ մասին վարը:

վերջին խնդիր մը։ Պրոկոպիոս կը յիշատակէ *Ναρσης, Αρατιος* եւ *Ισακης* 533ին ու 543ին (տ. Justi, 223, 47)։ Տէր-Մովսէսեան (Սոկր. ԶԸ—Թ) զանոնք կը նոյնացնէ մեզի ծանօթ կամսարական եղբայրներուն հետ։ Ալիշան նոյն գաղափարը յայտնած է 533ին յիշուածներուն նկատմամբ. “մարթ է սոցա, կ՚ըսէ նա Շիր. 5, ծն. 1, լինել որդիս Արշաւրի„։ մինչդեռ ուրիշ անձ կը համարի 543ի Ներսեհն ու Սահակը, որոնցմէ վերջինը Տոտիղասէ գերուած ու սպաննուած է։ Իրապէս, անկարելի եւ անհաւատալի է, որ Արշաւրի որդիները 480էն մինչեւ 543 կարողութիւն ունեցած ըլլան մարտիկ մնալու։ Բայց նոյնպէս անկարելի կը գտնեմ 533ի նկատմամբ։ 480ին Արշաւրայ որդիները առ նուազն 25—30 տարեկան էին արդէն։ Ո՞րքան ընդունելի է մտածել, որ 533ին՝ 70—80 տարեկան հասակի մէջ հայրենիքէ դուրս կռիւներու մասնակցած ըլլան։ Բացի ժամանակի դժուարութենէն — կայ նաեւ տրամաբանական արգելք մը՝ մեր երեք կամսարականները օտար երկիր փոխադրելու։ Հազիւ վերստացած հօրենական հողերը՝ իրենց արեան գնով — չէ՞ որ բնական էր նուիրուիլ անոնց շինութեան ցմահ, անբնական՝ անձամբ լքել զանոնք, դիմելու համար օտար երկիր՝ անստոյգ շահատակութեանց ի խնդիր։ Այդ հակառակ է Ե. դարու այս կամսարականներու նկարագրին։ Նոյնութիւնը ժխտելէ վերջ, անոնցմով զբաղիլը նիւթէս դուրս կը մնայ։ Ճիշդ է, որ թէ այս երեքը եւ

թէ անոնց հետ ուրիշ Համազասպ մը կամսարական կը կարծուին (Ալ. Շիր. 5), մանաւանդ որ առաջին երեքը ըստ Պրոկոպիոսի Բողբերդէ (Բասեն) գաղթած էին։ Սակայն անոնք ո՛չ Տեարք են Շիրակայ եւ Արշարունեաց, ո՛չ ալ ծանօթ են իբր ազգակից ու սերունդ պատմութենէ յայտնի կամսարականներու։ Ենթադրաբար կամսարական այսպիսի անհատներ Հայաստանէ դուրս՝ մեր առջեւ կ'ելլեն նաեւ Է. դարուն։ Հմմտ. Հ. Ց. Ա. գեր. Պատմական էջեր. Ներսէս եւ Սահակ իշխանապետք Իտալիոյ. ԲԶՊ. 1910, 145—152, ուր սակայն իրաւամբ խօսք չ'ըներ նա անոնց կամսարական տոհմի մասին։

## § 7. Զ. դարու Կամսարականները:

Հայոց պատմութեան մթին շրջաններէն է Զ. դարը, եւ այդ մթութիւնը բնականաբար ազդեցութիւն կ'ընէ նաեւ Հայ մէն մի տոհմի, հետեւաբար նաեւ կամսարականներու պատմութեան վրայ։ Մինչ Ե. դարու երկրորդ կէսին իշխող կամսարականներու նկատմամբ համեմատաբար մանրամասն տեղեկութիւններ ունինք, Զ. դարը մէկ թափով կարծես կը կտրէ պատմութեան թելը։ Ե. դարու Մեծ կամսարականներու պայազատները ճշդրտելու ի վիճակի չենք։ Հայաստանէ դուրս գործող կամսարական իշխանները որքան ալ փայլուն դիրք բռնեն պատ-

մութեան մէջ, կը մնան օտար, թէ ցեղաբանութեան անստուգութեամբ եւ թէ հայ հողէն բաժնուած ըլլալով։ Հայ մատենագրութեան մէջ աստ անդ պահուած յիշատակները շատ անգամ պարզ անուններ է կը բաղկանան առանց նախընթաց ու հետեւորդ տոհմագրային լուսաբանութիւններու։ Սահակի, Ներսեհի եւ Հրահատի ժառանգներն ի լոյս հանելու բաղձանքէն եւ յոյսէն հրաժարելով ուրեմն՝ ի մի կը հաւաքեմ ցիրցան անուններ, որոնք Զ. դարու կամսարականները կը պատկերացնեն։

Զ. դարու կամսարական իշխաններու ամենահին յիշատակութիւնը կը գտնեմ Ներսէս Բ.ի 554ին գրած թուղթին մէջ։ Հոն կը կարդանք՝ ի մէջ այլոց “Զաւրակ ի Գղաւոնան„ (Գիրք Թղթոց, 74). Ակինեան չի տարակուսիր այս Զաւրակը կամսարական համարելու եւ կը նոյնացնէ Անանիա Շիրակացւոյ Զաւրակին հետ (ՀԱ. 1913, էջ 79)։ Այս վարկածին դէմ ոեւէ լուրջ առարկութիւն ընել կարելի չէ։ Սակայն ինչո՞ւ տոհմանունը լռուած է։ Սոյն Նամակին մէջ դիտուած իրողութիւն է որ շատերը յառաջ կը բերուին ոչ տոհմի անունով, այլ հօր կամ պապին։ Զաւրակ ի Գղաւոնան՝ բացայայտիչ մը ունի, որ առաջին ակնարկին առեղծուածային կը թուի. տոհմի՞, գաւառի՞ թէ՝ ազգի անուն է։ Փոքրիկ սրբագրութիւն մը կը բառնայ առեղծուածային հանգամանքը. Գղաւոնան կը կարդամ՝ Գաւառոնան, որով Զաւրակ կ՚ըլլայ որդի Գաւառոնի մը, որ Զ. դարու ա-

ռաջին կէսին ապրած ըլլալու է։ Յայտնի է որ Գաղաւոն՝ կամսարական անուն է։

Նոյն թղթին մէջ քիչ մը վար կը յիշուի «Աստուածատուր Արշաւրեան», որուն մէջ մէտ եմ նմանապէս կամսարական մը տեսնելու։ Ստոյգ է որ Աստուածատուր անունը կամսարական չի հնչեր, բայց որոշ տոհմի մըն ալ առանձնայատուկ չէ եղած երբեք։ «Արշաւրեան» մականունը ապացոյց է տոհմին եւ հաւանօրէն կապ ունի Արշաւիր Բ.ի հետ, որ Աստուածատուրի պապը կրնայ եղած ըլլալ։ Կամսարական տոհմէն երկու հոգւոյ յիշատակութիւնը զարմանալի չէ, քանի որ ուրիշ տոհմերէ աւելի թուով անձեր կը գտնենք սոյն նամակին մէջ։ Հարց է, թէ այս երկուքէն ո՞րն էր տանուտէրը։ Կարգէն դատելով Ջուրակի (Ջաւրակ) կը պատշաճի տանուտէրութիւնը, իսկ Աստուածատուր լոկ իշխան էր. ինչպէս կը հետեւի բոլոր անուններէն յառաջ գրուած «իշխանք» տիտղոսէն։

Մինչ Գաղաւոնէ կամ Աստուածատուրէ մնացած ուրիշ ո եւ է հետք կը խուսափի մեր աչքերէն, Ջուրակ կը յայտնուի իբր Զ. դարու կամսարականաց կարկառուն դէմքերէն մին։ Դունոյ ապստամբութեան եւ հետեւորդ կռիւներուն մէջ է, որ նա իր անհատական կորովը փայլած է իբր զօրավիգն Մամիկոնեան Սպարապետ եւ 571ի ազգային-կրօնական շարժման պարագլուխ՝ Վարդանի։ Եթէ 572ի անցուդարձերն ալ Ղազար Փարպեցւոյ նման մանրապատում եւ արժանահաւատ պատմագիր մը աւանդած ըլ-

լար, անշուշտ երեւան պիտի գային Զ. դարը մի-ջեցնող դրուագներ՝ Մամիկոնեան-կամսարական գործակցութեամբ գոյացած: Դժբախտաբար զուրկ ենք այսպիսի հեղինակներէ: Հայ եւ օտար այն մատենագիրները, որոնք խօսած են Դունոյ ապստամբութեան մասին (տես՝ Ակինեանի, դժբախտաբար կիսատ գործը՝ «Դունոյ 572ի ապստամբութիւնը եւ յաջորդ տասնամեայ շրջանը», ՀԱ. 1913, էջ 62—64՝ աղբիւրներ. 64—71՝ իրողութիւնն ըստ Յովհ. Եփեսացւոյ. 72—80՝ ծանօթութիւններ) կամսարական գոր-ծակցութիւնն ի սպառ կը լռեն: Ասոնց հակա-ռակ Անանիա Շիրակացւոյ Ա. եւ Բ. հարցում-ները գործօն եւ կարեւոր դեր մը կ՚ընծայեն կամսարականաց եւ անոնց պետին՝ Ջաւրակի:

Երբ Խոսրով Ա. 571ին Սուրէն սպարա-պետին ձեռօք Հայոց վրայ լուծի եւ կրօնի բռնու-թիւն կ՚ուզէր գործադրել, Հայերը կ՚ապստամ-բէին թէ «հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեօք» (Սեբ. 26) եւ թէ յուսալից բիւզանդական արդէն խոստացուած օգնութեան վրայ: Հայերը, ըստ Յովհ. Եփ. Բ. 20, կը տրա-մադրեն 20.000 հոգիէ կազմուած բանակի մը վրայ՝ Վարդանայ եւ Վարդի հրամանատարու-թեան տակ: Թէ կամսարականք ինչ թուով մասնակից էին այդ բանակին, անծանօթ է, բայց Ջաւրակի ինքնակաց մղած կռիւները յայտնի կը ցուցնեն, որ նա հրամանատար էր սեպհական գունդի: Սուրէն 15.000 ով կը մտնէր Դուին: Բիւզանդական օգնութիւնը կը յապաղի. Հայերը

վճռաբար կը յարձակին, կոտորածի կը մատնեն Պարսից բանակը եւ զՍուրէն կը սպաննեն։ 572 փետր. 1ը յաղթութեան տօն էր Հայերու համար (Ակինեան, անդ. 79—80)։

Ո՞վ էր Սուրէնն սպաննողը։ Միակ ստոյգ եւ աներկբայ պատասխանը՝ Ակինեան իրաւամբ կը տեսնէ Անանիայի Ը. հարցման մէջ. «Ի ժամանակի ապստամբութեանն Հայոց ի Պարսից եւ սպանանելոյն Կամսարականին Ջաւրակայ զՍուրէն, դեսպան արձակեաց ոմն յաղատաց Հայոց առ Թագաւորն Պարսից գոյժ արկանել նմա, եւ գնայր աւրն յիսուն մղոն։ Եւ ժե. աւուր իմացեալ կամսարականին Ջաւրակայ հետամտիկս առաքէր զկնի ունել զնա, որք գնային աւուրն Ձ մղոն։ Արդ գիտեա, եթէ քանի՞ աւուր հասանէին նմա։ Լուծումն Ը. հարցման. Հասանէին յաւուրս ԻԵ» (Տէր-Մկրտչեան, անդ, էջ 22, 28)։ Ուստի պարզ է, որ զՍուրէն սրախողխող ընողն էր Ջաւրակ։ Անանիայի հակառակ ստոյգ ոեւէ վկայութիւն չկայ ի նպաստ Վարդանի։ Սեբէոս, էջ 26, անորոշ կ՚արտայայտուի եւ անոր խօսքէն կարելի է ստիպիչ կերպով հետեւցնել, որ Վարդան էր սպաննողը։ Սեբէոսի տեղիքը այսպէս յառաջ կը բերէ Ակինեան, էջ 78. «Եւ եղեւ ապստամբեաց Վարդան սպանեալ զՍուրէն մարզպան յանկարծաւրէն ի Դուին քաղաքի, առին զաւար բազում եւ գնացին ի ծառայութիւն Յունաց»։ Թէեւ Ակինեան կ՚ընդունի Սեբէոսի անորոշութիւնը, բայց իր յառաջբերումը աւելի նպաստաւոր է Վարդանի

սպանարար դերին։ Ակինեան խօսքը կրճատած է եւ ասով՝ “ապստամբեաց Վարդան սպանել„ խօսքին մէջ քերականական աղերս ծագած է ընդ մէջ Վարդանի եւ “սպանել„ի, մինչ բնագրին մէջ իրարմէ անկախ են “Վարդան„ եւ “սպանել„, եւ վերջնոյս ենթական առնուազն անորոշ կը մնայ։ Սեբէոս կը գրէ. “Ապստամբեաց Վարդան եւ ի բաց եկաց ի ծառայութենէ թագաւորութեանն Պարսից հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաւք: Սպանեալ...: Ուստի “սպանել„ կը պատկանի Վարդանեան ամբողջ կուսակցութեան՝ իբր համախորհուրդ բարոյական պատճառ սպանութեան, բայց թէ ով էր նիւթական մերձաւոր պատճառը, զայդ կը լռէ Սեբէոս, եւ կը յայտնէ Անանիա։ Սակայն Սեբէոս եղած է քար գայթագղութեան. Ասողիկ բացայայտ կերպով Վարդանի կու տայ սպանութիւնը. “Ընդ որ զայրացեալ Վարդանայ... սուսերահար առնէր զՍուրէն„ (Աս. 84)։ Իրմէ յառաջ Յովհ. կաթ. (37) կը գրէր. “Վարդան սպանանէ զմարզպանն Սուրէն ի Դուին քաղաքի„։ Երկուքն ալ սխալ կը հասկնան զՍեբէոս եւ այդ սխալը կը փոխանցեն նաեւ յետնագոյններուն։ Անանիայի վկայութիւնը ամէն տարակուսէ վեր է, որովհետեւ գրեթէ ժամանակակից է, քանի որ կը յենու իր հօր տեղեկութիւններուն վրայ (հմմտ. Հարցումն Ա.)։

Սուրէնի սպանումով ապստամբութիւն եւ պատերազմ վերջ չառին։ Մանաւանդ թէ բուն պատերազմը սկսաւ, երբ սպարապետին մահուան

գոյժին վրայ՝ Խոսրով Նոր օգնութիւն յղեց իր բանակին եւ Հայերն ալ Բիւզանդիոնէ թարմ ույժ ստացան։ Մղուած զանազան կռիւներէն Սեբէոս յանուանէ կը յիշատակէ “Խաղամխեաց„ ճակատամարտը(26), զոր ապա նաեւ յետինները փոխ կ'առնուն։ Այն պատերազմներէն դրուագ մը կը հաղորդէ Ան. Շիրակացի. Հարցումն Ա. Այսպէս լուայ ի հարէն իմմէ, եթէ ի ժամանակի պատերազմացն Հայոց ընդ Պարսս սաստիկ քաջութիւնք լինէին ի կամսարականէն Ջաւրակայ, որպէս թէ ամսաւրեայ աւուրբք երիցս յարձակեալ ի վերայ զաւրացն Պարսից՝ եւ հարկանէր յառաջնումն զկէս զօրուն, եւ ի հետ մտեալ հարկանէր յերկրորդումն զչորրորդ մասն զաւրուն, եւ յերկրորդումն՝ զմետասաներորդն։ Եւ մնացեալքն անկանէին փախստեայ ի Նախճաւան՝ թուով Մ2։ Արդ պարտիմք եւ մեք իմանալ մնացելովքս եթէ յառաջ քան զկոտորումն ո՞րչափ էին։ — Լուծումն Ա. հարցման. Յառաջ քան զկոտորած էին Ռ2Կ հեծեալ,։ Ակինեան իր ձեռագիրներուն մէջ այս դէպքը կը զետեղէ 573/574ին՝ Մծբնի առջեւ։ Բայց նկատի առնելով փախուստի դիմող բանակին ուղղութիւնը՝ դժուար է կռիւս Մծբնոյ առաջ մղուածին հետ նոյնացնել։ Բանակին թիւն ալ տարակոյս կը ծնուցանէ։ Մէտ եմ Խաղամխեաց դաշտին վրայ մտածելու, որ կը գտնուէր “առ սահմանօք Մարդաստանի„ (Զամչ., Բ. 286, ցանկ՝ 153), եւ որ պարտեալներուն փախուստը դէպի Նախճաւան հասկնալի կ'ընէ։ Հոն կը զարնուէին

Հայք ու Պարսիկք, եւ վերջինները “անհնարին հարուածովք մաշէին ի սուր սուսերաց„ (Սեբ. 26, Յ. կաթ. 37)։

Այսչափ ծանօթ է Զաւրակի մասին։ Արդեօք նա՞ ալ անոնցմէ էր, որոնք “գնացին ի ծառայութիւն Յունաց„։ Շատ հաւանական է, որովհետեւ ինքն իբր Սուրէնի սպանիչը՝ բոլորովին անապահով եւ վտանգալից հող ունէր իր ոտքերուն տակ՝ պարսկական բաժնին մէջ։

Կամսարականաց Զ. դարու պատմութեան նկատմամբ անդրագոյն տեղեկութիւններ կը թուի պահած ըլլալ Յովսիա հեղինակը, իբր Զ.—Է. դարէն, իր՝ “Թաթուլ, Վարոս եւ Թովմաս„ գրութեան մէջ (Հրտ. Ալիշան, Հայապատում, Պատմիչք, էջ 155—157)։ Խորագրին համաձայն՝ գրութեան առիթ եղած է Վարազդ Գաբեղեան, թերեւս այն՝ որ 554/555 ին Ներսէս Բ.ի թղթին մէջ կը հանդիպի Վարազ Գաբեղեան ձեւով (Գ. Թ., էջ 74)։ Զարմանալի հակադրութեամբ Ալիշան, որ այս նոյնացումը կ'ընդունի (Պատմիչք, էջ 156), Յովսիայի պատմութեան մէջ յիշուած Վարազտիրոցի մը նկատմամբ եւս կը դիտէ՝ “Թուի նոյն ինքն այս պատմութիւնս խնդրողն ի Յովսիա„ (Պտմ. 427)։ Ալիշան մտադիր չէ եղած սակայն, որ գրութեան մեկենասը՝ Գաբեղեան է, բայց ոչ՝ Պատմութեան Վարազտիրոցը։

Պատմական գրուածքիս հետեւեալ տեղիքներն ըստ երեւութին կը շօշափեն զմեզ զբաղեցնող տոհմը։

Էջ 427. «Եկն Վարազտիրոց իշխանն Բագրեւանդայ եւ Արշարունեաց, որ ի բանաստեղծացն Սպարապետ անուանիւր, մեծ տօնախմբութիւն կատարեաց, առատաձեռն ողորմութեամբ մխիթարէր զաղքատս, եւ զԲղբուջ ծննդեան գեօղ սրբոյն (Թաթլոյ) տայր ի վանսն՝ հաստատուն կտակով, եւ եդեալ զկտակն ի վերայ տապանի Սրբոյն՝ ասէր. Սուրբ ճգնաւոր, մի՛ թողուր զանարժանս յօգնականութենէ քումմէ, եւ զքո հայրենի գեօղն՝ քեզ եմ աւանդեալ, եթէ ոք հակառակ կայցէ՝ դու լեր վրէժխնդիր»: Պատմութեան ընթացքէն կը տեսնուի, որ բանաստեղծներէն երգուած ու հռչակուած այս Սպարապետը «յելս Ե. դարու» կ՚ապրէր (Ալիշան, Այր. 55): Հաւանօրէն ասոր որդին է 554ին յիշուած «Աշոտ ի Վարազտիրոցեան» (Գիրք Թղթոց, 74): Թէ սոյն անձը կամսարական չէ, բացարձակապէս ստոյգ է ոչ լոկ անուններէն. այլ նաեւ տոհմանուան պակասէն: Յովսիա ուրիշ անուններու մօտ չի մոռնար «կամսարական» յաւելուածը, ուստի հոս եւս զանց չէր առնուր, եթէ Վարազտիրոց նոյն տոհմին պատկանէր: Տարակուսական կը գտնեմ Տէր «Արշարունեաց» պարագան, որովհետեւ յելս Ե. դարու յայտնի են Տեարք Արշարունեաց թէ Ղազարէ (Ներսեհ) եւ թէ Գիրք Թղթոցէ (Սահակ):

Էջ 429. «Գայր եւ իշխանն Բագրեւանդայ եւ Արշարունեաց Աշոտ որդի Սմբատայ՝ ի վանքս, եւ տայ զԾնօտկոյս, հաստատուն գրով, եւ զՈսկոյն ի Վանզոյս, ի պէտս վարդապե-

տացն՝ որ զգրչութեան արուեստն ունէին, եւ ղսուրբ գիրսն յօրինէին, որք էին երեսուն եւ վեց վարդապետք»։

Սոյն Աշոտը՝ ըստ պատմագրին կ՚ապրէր Յովհաննէս Բ. կաթուղիկոսէ վերջ, ուրեմն Զ. դարու երկրորդ կէսին (Ալիշան, Այր. 55)։ Վերոյիշեալ պատճառով ասոր կամսարական ըլլալն ալ առ նուազն երկբայական կը համարիմ։ Իսկ «Արշարունեաց» յաւելուածին պատմական արժէքն ուրանալու դրական հիմ մը չունիմ։ 507էն մինչեւ Է. դար՝ Արշարունեաց անունը իբր յորջորջանք յայտնապէս կամսարական իշխանի՝ ոչ մէկ տեղ գործածուած կը գտնեմ, անհնար չէ մտածել, որ մեզի անծանօթ պատճառներով Զ. դարուն սոյն գաւառը կամսարականներէն անցած ըլլայ ուրիշ տոհմի մը, սոյն պարագային՝ Բագրեւանդայ տէրերուն, եւ միայն Է. դարու Մեծ Ներսէհներուն ժամանակ վերըստին իր նախկին տէրերուն վերադարձուած։

Յովսիա միայն մէկ կամսարական կը յիշէ իբր այսպիսի, էջ 429. «Դաւիթ իշխանն կամսարական շինէ զտեղին (փոխման Վարոսի), անուանելով զնա Գտկոյ վանք, եւ զՀեզ գեօղ ի Բագրեւանդայ՝ հաստատուն գրով տայ ի վանքն, եւ ի Հորզեաց հարիւր կայթ հաց եւ հազար փառ գինի»։ Այս դէպքը պատահած է Վարոսի մահէն վերջ՝ Զ. դարու առաջին կէսին։ Դաւիթ կամսարական այլուստ ծանօթ չէ։

Յովսիայ գրուածքը կամսարականաց պատմութեան վրայ ոեւէ լոյս չի սփռեր։ Անոր վրայ

յեցած կարելի է միայն մակաբերել, որ Զ. դարուն փոփոխութիւններ տեղի ունեցած են հողային տէրութեան մէջ, բայց ստոյգ մանրամասնութիւնները կը մնան մթոյ մէջ։

Զ. դարու առ այժմ մեզի ծանօթ Կամսարականներն են ուրեմն՝ Գազաւոն, Ջաւրակ, Աստուածատուր եւ Դաւիթ։

## § 8. Կամսարականք Է. դարուն:

—

### ա) Ներսեհ Բ.։

Է. դարը ամբողջապէս զբաղուած է պարսկական-յունական եւ ապա արաբական պատերազմներով։ Մեծ պետութիւններուն դարաւոր նախանձախնդրութեան եւ թշնամութեան նոր եւ ուժեղ կենդանացումին ուղղակի կամ անուղղակի պատճառն էր Հայաստան, եւ ամէն պարագայի տակ Հայաստան աւելի կը զգար երկակողմանի հարուածներուն ուժգնութիւնը եւ բանակներուն պատճառած աւերը։ Պատերազմական այս գործառնութիւններով մասնաւորապէս կը կրէին Կամսարականները եւ անոնց երկիրները, որովհետեւ եթէ նոյն իսկ ենթադրենք, որ իբր տոհմ անտարբեր աչօք դիտէին պարսկական-բիւզանդական կռիւները, սակայն կենդրոնական դիրք ունենալով շատ անգամ արիւնալից ընդհարումներու ակամայ ասպարէզ կը դառնային։

Մի՛թէ հաւանակա՞ն է, որ Կամսարականք չէզոք անկանատեսներ եղած ըլլան այն ատեն, երբ Մօրիկի սպանութենէ վերջ (604) Խոսրով Բ. իր բարերարին վրէժն առնլու պատրուակով պատերազմ կը հռչակէր Փոկասի դէմ եւ ասպատակ սփռելով Շիրակի մէջ ճակատ եւ ճակատի վրայ կը շահէր։ 591ին Խոսրով իր հողերուն մեծ մասը ի շնորհակալութիւն յանձնած էր Մօրիկի, որով նաեւ Շիրակ ու Արշարունիք բիւզանդական հովանւոյն տակ մտած էին իրապէս (Սեբ. 33, 45. Հիւբշմ. Ազգ. Մտ. Ծգ. 43—45)։ Կամսարականք շատ պատճառներ ունէին Պարսից դէմ դժգոհելու։ 572ի յիշատակը վառ էր տակաւին։ Ուստի ուրախութեամբ պիտի ողջունէին տէրերու բարեբաստիկ փոփոխութիւնը եւ բիւզանդական գերիշխանութիւնը, որուն կը փարէին այլեւս եւ կը մնային անքակ, նոյն իսկ երբ քաղաքական աղերսները վերստին կը փոխուէին եւ իրենց գաւառները պարսկական կամ արաբական լուծի տակ կը մնէին։ Եթէ Ե. դարուն Կամսարականաց դէպի Բիւզանդիոն տածած զգացումներուն մասին վարանելու տեղիք կայ, ամէն տարակոյս կը փարատին 572 եւ 592 թուականները։ Զ. դարուն Բիւզանդիոնի շահերն օտար ճակատներու մէջ պաշտպանող Կամսարականներն արդէն մատնցոյց են, թէ որ կողմ կը միտէր տոհմին համակրանքը։ 571ին կ'ընդգրկեն անոնք բիւզանդական գերիշխանութիւնը նաեւ իրենց հողերուն վրայ։ Բնական չէ՞ մտածել, որ բիւզանդական բանակ-

Ներուն հետ կողք կողքի մաքառէին Պարսից դէմ, երբ ասոնք Շիրակը վերագրաւելով՝ կը դիմէին դէպի Կարին՝ բարձր Հայոց բիւզանդական այդ ամրոցը։ Մինչ Խոսրով անձամբ կը վարէր իր բանակը Դարայի, Եդեսիայի դէմ, մանաւոր բանակ մըն ալ կը գումարուէր (607) «ի կողմանս Հայոց» Դատոյեան զօրագլխի հրամանատարութեան տակ։ Յունական զօրքը ճակատ կը կազմէր «ի դաշտն Շիրակ եւ ի գիւղն որ կոչի Շիրակաւան»։ Սակայն «իբր զխոյանալ արծուոյ» յաղթական յառաջացող պարսիկ բանակին առջեւ կը ստիպուի յոյն բանակը տեղափոխ ըլլալ «յայնկոյս գետոյն՝ ի դաշտն որ կոչի Ականից»՝ պարսիկներէ հալածուած։ Ամբողջ գաւառը վտանգի եւ տագնապի մէջ է, բնակչութիւնը կը լքէ իր բնակութիւնները եւ կ'ամրանայ «ի բերդն Երգինայի»։ Գետիկ գիւղի մօտ տեղի կ'ունենայ վճռական բախում մը։ Թէեւ Երգինայի Հայերէն բազմութիւն «մանկտւոյ գերանդաւք եւ սրիանաւք անկան ի վերջոյ» Պարսից, անսպասելի օգնութիւն մը հասցնելով Յունաց եւ իրենց հայրենակիցներուն, եւ «գործեցին մեծ աւճիր մխասուց. Թողին վիրաւորս եւ առեալ զառ եւ զաւար եւ զկապուտ՝ գնացին ի բերդն իւրեանց» — սակայն եւ այնպէս յունական բանակը խուճապի կը մատնուէր, շատերը կը սպաննուէին եւ «սակաւք մնացեալք փախստեայս գնացին»։ Երգինայի Շիրակացիները կ'ընդունին իրենց պատիժը. Պարսիկք «իբրեւ տեսին զեղեալ չարութիւնն. համագունդ արշաւեալ ի բերդն առեալ

զնա, զբազումս սրով սատակեցին, եւ բազումք զահաւէժ լինէին յահէ անտի, եւ կէսքն ելեալ ի գունդն՝ որ բանայր ի կողմն գետոյն՝ փախստական գնային, եւ զայլսն ամենայն ի գերութիւն վարեցին։ Եւ գերեցան յաւուր յայնմիկ ի բերդէն յայնմանէ զեւղք լգ։ Եւ զամենայն նոյնպէս ի գերութիւն վարեցին, եւ ժողովեալ զամենայն զառ եւ զաւար գաւառին, եւ զաւրքն դարձան եւ գնացին յԱտրպատական» (Սեբ. գլ. իբ)։ Թէ Կամսարականք յունական շարքերուն մէջ իրենց ժողովրդեան հետ Պարսից դէմ կը կռուէին, այդ ուրեմն ստոյգ է։ Բայց չկրցան ազատիլ Պարսից լուծէն, ցորչափ որ Խոսրով յաղթական էր։ Հերակղէսի երեւումով բախտը կը փոխուի։ Կամսարականք դարձեալ կը ստանձնեն բիւզանդական գերիշխանութիւնը, եւ իրենց հողերը Հերակղէսի կարեւոր ծառայութիւն կը մատուցանեն իբր կամուրջ. 629ին կը վերահաստատուէր 591ի սահմանագիծը։ Կամսարականներու պատմութեան մէջ այնուհետեւ ծաւալման եւ բարգաւաճումի նոր շրջան կը բացուի։ Հեռու ազգային երկպառակութիւններէ — Մժեժ Գնունւոյ, Դաւիթ Սահառունւոյ եւ Թէոդորոս Ռշտունւոյ ցանկութիւններէն, դաւերէն ու վտանգներէն — մինչեւ 654 անոնք կը վայելեն խաղաղութիւն եւ կը նուիրուին քարուքանդ եղած հողերուն վերաշինութեան։

Տիրատենչիկ նպատակներէ ազատ ըլլալով է, որ Կամսարականք կրնային բարեկամութիւն մշակել նաեւ անոնց հետ, որոնք բացար-

ձակ ազգապետութեան կը նկրտէին։ Անոնք չունէին մրցակցութիւն ու գժտութիւն Վարազտիրոցի մը, Մժեժի մը կամ Սահառունւոյ մը հետ, մանաւանդ թէ անոնց գործակցութիւնն եւ օժանդակութիւնը կը վաստկէին վերաշինութեան գործին մէջ։

Բիւզանդական գերիշխանութիւնը, որուն կամսարականք միշտ համակիր եղած էին, հաստատուն հողի վրայ կը դրուէր։ Հայկական արձանագրութիւններու մէջ թուականները Բիւզանդական կայսրներու գահակալութեան տարիներով կը ճշդուէին։ Երբ 652ին Կոստանդին կայսրը Կարին կը գտնուի՝ կամսարականք — Շիրակացիք կ՚ըսէ Սեբէոս, էջ. 139 — ընդ առաջ կը փութան յողջոյն եւ անշուշտ իրենց քսանամեայ աշխատութեան արդիւնքները ծանուցանելու պետին։

Ո՞վ էր այս խռովայոյզ ժամանակ կամսարականաց տանուտէրը, եւ ո՞վ սկսաւ վերաշինութիւնը։ Հայ մատենագիրներն այս շրջանէն ոչ մէկ կամսարականի անուն կ՚աւանդեն։ Մեր միակ աղբիւրներն են արձանագրութիւնները։ Անոնց համեմատ Է. դարու երկրորդ քառորդին կ՚իշխէր խաղաղասէր եւ շինարար կամսարականը՝ Ներսեհ (Բ.), զոր կը ճանչնայ նաեւ Ան. Շիրակացի (Հարց. Ի)։

Արձանագրական հնագոյն յիշատակութիւնը Ներսեհի մասին՝ պահուած է Ալամանի Ս. Անանիա եկեղեցւոյն հիմնարկութեան արձանագրութեան մէջ՝ 637էն.

“ՔՍԱՆ ԵՒ ԵՒԹՆԵՄԻՈՑ ՀԵՐԱԿՂԻ ԲԱՐԵՊ[ԱՇ]Տ ԹԱԳԱՒՈՐԻ ՆԵՐՍԵՀԻ ՇԻՐԱԿԱՑ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ ՏՆ[*պատուհան*]ԱՌՆ ԵՒ ԹԵՈ[*երկու մաքուր քարեր*]ՓԻՂՈՍ [ԱՇ]ԱՐՈՒՆԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՍ ԳՐԻԳՈՐ ԵՂՈՒՍՏՐ ԵՒ ՄԱՐԻԱՄ ԻՄ ԿԻՆ ՇԻՆԵՑԱՔ ԶՍՈՒՐԲ ԵԿ[*պատուհան*]ԵԿԵՂԵՑԻՍ ՎԱՍՆ ՄԵՐ ՀՈԳԻՈՑ։„

*Տես՝ Ջալալեանց, Ճ. ի Մ. Հ.* 52. *Շահխաթունեանց*, 591. *Ալիշան, Շիր.* 125. *Գէորգեան, Տեղ. Շիր.* 95—96. *Սարգիսեան*, 194. *Կոստանեան*, 1. Орбели, Надпись 637 г. о построеніи аламанскаго церкви св. Ананіи, Хр. Вост. 1913, 131—132, *տախտ.* VI—VII. *Ստրչիգովսկի, Հայկ. ճարտ. Ա.* 36—37։

*Արձանագրութեան թէ գիրը եւ թէ լեզուն անկանոն է, այս պատճառաւ այնպէս կը թուի, թէ Հերակղի* 27. *տարին եղած ըլլայ նաեւ Ներսեհի եւ Թէոփիղոսի* 27. *տարին։ Սակայն արձանագրութեանց մէջ տանուտէրի իշխանութեան տարիները թուարկութեան հիմ չեն առնուած երբեք, այլ միայն ընդհանուր յիշատակութիւն կ'ըլլայ՝ օ. հ. “ի տանուտէրութեան„, “յեպիսկոպոսութեան„, ինչպէս ունի Մրենի արձանագրութիւնը, եւ որուն նմանը հոս ալ կ'ենթադրէ կամ կ'ուզէ լրացնել Ստրչիգովսկի։ Օրբելիի համեմատ սկզբնաբար լիակատար յիշատակարանի մը համառօտութիւնը փորագրուած է Ս. Անանիայի որմին վրայ, մինչ*

Սորչիգովսկի ուրիշ լուծում մը բաղձալի կը գտնէ առանց զայն ձեւաւորել կարենալու։

Արձանագրութեան համեմատ եկեղեցւոյս հիմնադիրն է Գրիգոր, որուն հարստութիւնը կամ թերեւս աւելի՝ քաղաքական դիրքը զինքը «եղուստր» = illustris մակդիրով օժտած է (Ալիշան, անդ)։ Շինութիւնը կատարուած է 637ին, ուրեմն 637ին Ներսեհ էր ապահովապէս Տէր Շիրակայ եւ Արշարունեաց։

Ե՞րբ դնելու է սկիզբը Ներսեհի իշխանութեան։ Ալամանի արձանագրութիւնը լոյս չի սփռեր այս խնդրոյն վրայ, որովհետեւ, ինչպէս ըսի, անճիշդ շարադասութեամբ միայն Հերակլի ԻԷ. տարին եղած է նաեւ Ներսեհի ԻԷ. տարին, իբր թէ Ներսեհ 610ին սկսած ըլլայ իր տանուտիրական իշխանութիւնը։ Իմ կարծիքով ընդմէջ 629ի եւ ամէնէն ուշ 635/637ի դնելու է Ներսեհի իշխանութեան սկիզբը։ Այս կարծիքիս իբր հիմ կը ծառայէ Թագարանի արձանագրութիւնը։

Ծանօթ է, որ արձանագրութիւնս նախ հրատարակած է Մառ (Имя Бут или Буд в арм. надписи VII. го по Р. Х. ЗВО. հտր. VII. 322), ապա՝ Օրբելի (Хр. Вост. II, 126—130, տխտ. V) եւ վերջապէս Սորչիգովսկի (Հայկ. ճարտ. Ա. 33)։

Զափազանց փճացած, թերի եւ խառնաշփոթ, եկեղեցին գօտեձեւ պատող այս արձանագրութեան մեզի հայող մասն է հետեւեալը.

Արեւմտեան կողմ. "Երեսուն եւ չոր-րորդ ամի Խոսրովայ արքայի,, կը հիմնարկէ եկեղեցիս Բուտ, եւ անոր մահէն ետք Աննա ա-մուսինը կ'աւարտէ զայն՝

Արեւելեան կողակ. "...ի Մա]րզպա-նութեան Վարազտիրոցի Հայոց Աս-պետի Յառունղեան Տէրութեան վա-նական ի Հոգաբարձութե...,,

Հիւսիսային կողակ. "Յրկան Որդւոյ Եսմրկայ Կամսարականի Աշանուշայ Գրիգորի վանանդացոյ դստեր Աննա, եւ Որդեակք Գուանան Հրանատ եւ Տիարուանդ Դժխոյ Սահակի Որանասի Ծոռշան յիշեցի ած եւ ողորմեցի,,:

Նպատակ չունիմ ինծի չհայող վիճելի կէ-տերու միջամուխ ըլլալ: Զմեզ հետաքրքրողն է նախ սա որ Խոսրովի գահակալութիւնը հիմ առ-նուած է թուարկութեան: Մեկնութիւնը պարզ է. 629ի խաղաղութեամբ միայն Բիւզանդիոն իր տէրութիւնը կը տարածէր մինչեւ 591ի սահ-մանագիծը: Ուստի 629է յառաջ Շիրակ եւ Ար-շարունիք պարսկական էին եւ հետեւաբար բնա-կան էր, որ 629է յառաջ փորագրուած արձա-նագրութեան մէջ տեղ գտնէր երկրին վեհա-պետին՝ Խոսրովի գահակալութիւնը, եւ որ՝ 629է ետք միայն զայն կրնար Հերակլէս փոխարինել, ինչպէս որ կը տեսնենք արդեամբք՝ Ալամանի մէջ: — Հասկանալի է նաեւ Վարազտիրոցի անունը,

որովհետեւ 628ին նա Պարսիկներէ ընդհանուր մարզպան կարգուած էր։ Ասոնցմէ զատ անհրաժեշտ էին կամսարական տանուտէրին եւ եպիսկոպոսին անունները, քանի որ անոնց իշխանութեան ենթակայ հողին վրայ կը կառուցանէր Բուտ իր եկեղեցին։ Եւ իրապէս եպիսկոպոսին անունը սկզբնաբար կը գտնուէր ինչպէս կը ցուցնէ “ի հոգաբարձութեան„ բառը, որուն յաջորդող յատուկ անունը եղծուած է։ Հաւանօրէն Թէոփիլոս էր այն ատեն Արշարունեաց եւ Շիրակայ եպիսկոպոսը (տ. ՀԱ. 1924, Թիւ 1—2)։ Թէեւ Գալուստ Տէր Մկրտչեան “յրկան„ը կը լրացնէ “Եղբայրկան„, որ իբր եպիսկոպոսի անուն ծանօթ է Եղիշէէ, սակայն կարելի չէ պնդել թէ “Հոգաբարձութեան„ եւ “յրկան„ բառերը կրող քարերն ուղիղ զետեղուած են։ (Գալուստի դիտողութիւնը՝ Хр. Вост. 1915, էջ 315։) Ի կարգին յիշուած է նաեւ երկրին իշխանը, որուն տոհմանունը պայծառ կեցած է՝ կամսարական, զոր կը կանխէ յատուկ անուն մը՝ “Նւսեհկայ„։ Բնականաբար հոս կը սպասէինք “ի տանուտէրութեան„ բանաձեւին, իբր նմանօրինակ “ի հոգեբարձութեան„, բայց անհաւանական չէ, որ ինկած ըլլայ արդէն ուրիշ բազմաթիւ տեղափոխութիւններ ու խառնակութիւններ պատճառող վերանորոգութեան ժամանակ։ Կամսարական տոհմանունը կանխող անունը՝ “Նւսեհկայ„ շատ խորթ կը հնչէ եւ Սմրչիգովսկի կը համարի, թէ Ներսեհի հետ շփոթուած ըլլայ։ Անուան խորթութիւնը բաւական պատճառ չէ

անոր անհարազատութեան։ Ներսեհի հետ շփոթութիւն մը անհնար է ընդունիլ, այնքան աննման են իրարու երկու անունները։ “Ներսեհ„՝ կամսարականաց ո՛չ միակ եւ ոչ ալ բացարձակապէս առանձնայատուկ անունն է, բայց այնքան ընտանի ու ծանօթ, որ շփոթութիւն մը գրեթէ անկարելի էր։ Բայց ասոր հակառակ քարերու խառն շարքը ծանր պատճառ է տարակուսելու “Եւսեբկայ„ եւ “Կամսարական„ անուններու աղերսի մասին, ինչպէս նաեւ “Եւսեբկայ„ն կանխող “որդւոյ„ բառը ոչ անպայման անոր կը պատկանի։ Եթէ սակայն եւ այնպէս Եւսեբկիոս՝ անունն էր ժամանակակից Կամսարական Տանուտէրին՝ այն ատեն Ներսեհ 629է յետոյ կը սկսի իշխել, ապա թէ ոչ Է. դարու առաջին քառորդին մէջ դնելու ենք Ներսեհի իշխանութեան սկիզբը։ Արդէն ըսի, որ սկզբնական ձեւին մէջ արձանագրութիւնը կը պարունակէր հաւանաբար “ի տանուտէրութեան Շիրակայ եւ Արշարունեաց„ բանաձեւը։ — Լեզուական սխալներն այնքան առատ են, որ “Եւսեբկայ„ փխ. Եւսեբկեայ՝ իբր սեռական “Եւսեբկիոս„ ուղղական ձեւին՝ կարելի է անտեսել։ Գալուստ Տէր Մկրտչեան (Хр. Вост. 1915, 315—316) արձանագրութեանս մէջ յիշուած Սահակը, փեսայն Ըննայի եւ ամուսին Շուշանայ, Կամսարական կը համարի։ Հանճարեղ ենթադրութիւն մըն է, որ սակայն Տանուտէրութեան հարցը չի լուսաբաներ, քանի որ Սահակ կը ներկայանայ հոն լոկ իբր դեռահաս եւ հանրածանօթ որդի իշխող Տանուտէրին։

Ուրեմն Եւսեբկիոս, որ աւելորդ է դիտել տալ, այլուր չի պատահիր, իբր Նախորդներսէհի էր ականատես եւ մասնակից յունականպարսկական կռիւներուն 629է յառաջ։ Ներսէհ տանուտէրութեան կը բարձրանար երբ արդէն խաղաղութիւն կը տիրէր երկրին մէջ եւ կը նուիրուէր երկրաշէն գործունէութեան։ Հայ հարուստներն անոր օրով հնարաւորութիւն կը ստանային ճարտարապետական հրաշալիքներ կանգնելու։ Տեսանք արդէն Ալամանի Ս. Անանիան։ Բայց Ներսէհ անձամբ օրինակ կ'ըլլար շինարարութեան ընդհանրապէս եւ եկեղեցաշինութեան մասնաւորապէս։

Ներսէհիս կը վերագրեմ Մրենի հոյակապ կաթողիկէն, որուն արձանագրութեան մէջ կը հանդիպինք նաեւ անոր անուան։ Հիմնարկութեան արձանագրութիւնը փորագրուած է տաճարի արեւմտեան որմի ճակատին վրայ։ Դժբախտաբար թերի է ի մէջ այլոց նաեւ սկիզբը, ուր ապահովապէս թուականը կը գտնուէր։ Հետեւեալն է արձանագրութիւնը։

1. ...ՈՐԴԻ ՀԵՐԱԿՂԻ ԲԱՐԵՑԱՂԹՈՂ ԹԱԳԱՒՈՐԻ Ց[ԻՇ]ԽԱՆՈՒԹԵ... [ԴԱՒԹԻ Ա]ՄԵՆԱԳՈՎ ՊԱՏՐԿԻ ԿՈՒՐԱՊԱՂԱՏԻ ԵՒ ՍՊԱՐԱ[ՊԵՏԻ ՀԱ]
2. ՈՑ ԵՒ ԱՍՈՐԻՈՑ ԵՒ ՑԵՊԻՍԿՈՊՈՍՈՒԹԵԱՆՆ ՍՐԲԱ[ՍԻՐԻ ԹԵ]ՈՎՓԻՂՈՍԻ ԵՒ Ի ՏԱՆՈՒՏԵՐՈՒԹԵԱՆ ՆԵՐՍԵ[ՀԻ ՇԻՐԱ]
3. ԿԱՑ ԵՒ ԱՇԱՐՈՒՆԵԱՑ ՏԵԱՌՆ ՇԻՆԵՑԱՒ

## ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑ[ԻՍ Ի ԲԱՐԵԽԱՒՍ]ՈՒԹԻՒՆ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԱՑ ԵՒ ՄՐԵՆՈՑ ԵՒ ԱՄԵՆ ... [ԱՅՆ ԵՐԿՐԻՆ?]

Տես՝ Գ. Յովսէփեան, 173. Կոստանեանց, 2. Ալիշան, Այր. 113—114. Սարգսեան, 194—200. Յ. Վ. Մովսէսեան՝ Արր. 1890, 256—258. Մեսրոպ Վրդ. Ազգ. Հանդ. Ժ. 16 (1907), 190. Օրբելի, Хр. Вост. 1913, 132—138, տխտ. VIII, Ստրչիգովսկի, Ա. 42—44։

Ալիշան արձանագրութիւնը եւ հետեւաբար շէնքը 613էն վերջ կը համարի։ Սակայն այն թուականին կը հակառակի յիշատակութիւնը Հերակղի, որ 629է ետք միայն իրաւունք կը ստանար նման յիշատակութեան մը. կը հակառակի նաեւ Դաւիթ Սահառունին, որուն կուրապաղատութիւնը կ'իյնայ 638—641։ Ուստի արդէն Կարապետ Վրդ., Արր. 1903, 142—143, շինութեան ժամանակը 630է ետք կը դնէ։ Օրբելիի եւ Ստրչիգովսկիի հետազօտութիւնները կը ստիպեն զմեզ առանց սխալելու վախի թերի թուականը լրացնել այսպէս. “Քսան եւ իններ (կամ՝ երեսներ) որդի Հերակղի = 639—640։ Այս թուականին ճշտութեան նպաստաւոր է նաեւ Ալամանի Արձանագրութիւնը։

Ո՞վ էր շինողը Մրենի կաթողիկէին։ Վերոյիշեալ բոլոր հեղինակները Դաւիթ Սահառունւոյ կ'ընծայեն։ Սոյն կարծեաց հիմ կը հայթայթեն նաեւ հայ պատմագիրներ. Յովհ. Կաթ.,

ԺԹ, 104, կ՚ըսէ. Դաւիթ Սահառունի “ի հրամանէ Նորուն (= Հերակղի) շինէր եկեղեցին գեղեցկայարմար՝ որ ի քաղաքագեղն Մրեն. — Վարդան, լգ. 62՝ Դաւիթ Սահառունի “շինեաց զկաթուղիկէն Մրենոյ„: Աւելի զգոյշ կամ անորոշ կ՚արտայայտուին Գանձակեցի եւ Ս. Անեցի՝ թէ Յ. Կաթողիկոսի ազդեցութեան տակ են: Առաջինը, էջ 30, կը գրէ. “Յաւուրս Դաւթի Սահառունւոյ ի վաթսուն եւ երկու թուականին եղեւ շինուած կաթուղիկէին Մրենոյ„. իսկ երկրորդը՝ ՌԺԵ. “Շինուած կաթուղիկէին Մրենոյ„: Այսոնց համեմատ խմբագրուած է նաեւ ինքնին արձանագրութիւնը: Հոն յառաջ բերուած են Հերակղ ու Դաւիթ՝ ոչ իբր շինող, այլ իբր կռուան ժամանակագրութեան: Եկեղեցին շինողը իբր այսպիսի յայտնապէս յիշուած չէ, բայց դիւրին է արձանագրութեանս վրայ յեցած զայն ստուգել: Շինութեան հեղինակը նպատակ դրած է “ի բարեխաւսութիւն Կամսարականաց„ Աստուծոյ տաճար կանգնել: Արդ Դաւիթ Սահառունի մը “ի բարեխաւսութիւն Սահառունեաց„ պիտի ձեռնարկէր այդպիսի գործի մը, եւ եթէ պարզապէս գործակից էր եւ մասնակից ծախքերուն, այն ատեն եկեղեցին պիտի ծառայէր ի բարեխօսութիւն նա՛խ Սահառունեաց եւ ա՛պա Կամսարականաց: Ուրեմն շինութեան նպատակը կ՚երաշխաւորէ, որ շինողն է Կամսարականաց տոհմէն յանձին Ներսեհ Կամսարականի: Սորչիգովսկի զԴաւիթ լռելեայն յիշատակուած կը համարի. Նա կ՚ամբողջացնէ “ի բարեխաւսութիւն

կամսարականաց եւ Մրենոյ„ եւ *ամենայն երկրին Հայաստանեայց*„, որուն ներկայացուցիչն էր Դաւիթ։ Սակայն շատ աւելի բնական է ենթադրել, որ “ամենայն„ին կը յաջորդէր “երկրին *Շիրակայ*„, քանի որ Շիրակայ մէջ կը կանգնուէր եկեղեցին։ Այս հաւանական ամբողջացումէն կը հետեւի, որ Մրենի կաթուղիկէն կառուցած է Ներսեհ կամսարական՝ օժանդակութեամբ Մրենի եւ Շիրակի բնակչութեան իբր 639—640՝ երբ Արշարունեաց եւ Շիրակայ եպիսկոպոս էր Թէոփիլոս (տ. ՀԱ. 1924, թիւ 1—2)։

Մրենի կաթուղիկէի մասին ճարտարապետական տեսակէտէ՝ հմմտ. Թորամանեան, Հայ ճարտարապետութիւնը Անիի եւ Երուանդակերտի մէջ, Ախուրեան, գ. (1909), թիւ 57. Տեկոր, էջ 20—25, 46, 88. Ստրչիգովսկի, Ա. 182—184, Բ. 506։

Սոյն Ներսեհին կ'ընծայէ եւ 630ին շինուած կը համարի Գր. Յովսէփեան (էջ 173) նաեւ Թալինի միանաւ խաչագմբեթ եկեղեցին՝ Ս. Աստուածածին, բայց թէ ճարտարապետութիւնը եւ թէ արձանագրութիւնը կը ստիպեն զմեզ զայն Է. դարու վերջ կառուցուած դնել։ Այս մասին վարը։

Ըսի վերը, որ սոյն *Ներսեհը* կը ճանչնայ նաեւ Անանիա Շիրակացի եւ՝ անոր կեանքէն կը քաղէ իր Ի. հարցման նիւթը. “Ներսեհի կամսարականի բուն կանգնէր առ ստորոտով լերինն,

*որում Արտին կոչեն։ Եւ մտին երամակք ցռուց բազումք։*

*Եւ ոչ լեալ ատակ որսորդացն ընթացեալ պատմեցին նմա ի գեաւղն Թալին։ Եւ նորա խուռովի եկեալ հանդերձ եղբայրաւքն եւ ազատաւքն եւ մտեալ կոտորէին զերէսն։ Եւ եղեն կալեալք ի Թակարդի հասարակ երէոցն, եւ եղեն սպանեալքն նետիւ չորս մասն եւ զմատաղերէն ոչ կալան, որ եղեւ ժբ. մասն, եւ եղեն մեռեալք ի Նիզակէ ՑԿ երէ։ Արդ գիտեա թէ ընդ ամենայնն քանի՞ լեալ էին։ Լուծումն ի. հարցմանն. եղեւ ընդ ամենայն երէն ՍՃԿ„ (Տէր-Մկրտչեան, անդ, էջ 25, 28)։*

*Թէ հարցմանս Ներսեհը՝ Մրենի շինողն է, կը հետեւի տիտղոսէն, որ է՝ "Տէր Շիրակայ եւ Արշարունեաց„, եւ ոչ թէ՝ "Պատրիկ, Ապեհիւպատ„։ ԻԱ. հարցման մէջ Ներսեհ Արշաւրեան կը կոչուի "Նախն„ այսմ Ներսեհի, որով կ'արտաքսուի Ներսեհ անունով տանուտէր մը ընդ մէջ Ե. դարու եւ Մրենի Ներսեհին։ Անանիայի հարցումը կը հաղորդէ նաեւ, որ սոյն Ներսեհը ունեցած է եղբայրներ։ Արդեօք ասոնց կարգէ՞ն էր Բագարանի Սահակ Դեռահասը, զոր Գալուստ Տէր-Մկրտչեան կամսարական համարեցաւ։ Պատմական աղբիւրները բացարձակապէս լուռ են դժբախտաբար։*

*Պատմութիւնը Ներսեհ մը կը ճանչնայ նաեւ Է. դարու վերջերը իբր 690ին։ Խնդիր եղած է, որ երկու տարբե՞ր անձինք ընդունելու ենք թէ՝ միեւնոյն անձն է մինչեւ Է. դարու վեր-*

ջերն իշխողը։ Զմեզ հոս զբաղեցնող Ներսեհը 635—640ին արդէն տանուտէր էր եւ դժուարաւ թէ 40 տարեկանէ պակաս եղած ըլլայ (Տորչեգովսկի, Ա. 50)։ Արդ 689ին նա 80—90 տարեկան ծերունի մը պէտք էր ըլլար, եւ չեմ կրնար մտածել, որ Յուստինոս Բ. կայսր զառամած ծերունւոյ մը տկար բազուկներուն յանձնած ըլլայ խռովայոյզ ժամանակին ղեկը։ Ուստի կը միտիմ երկու իրարմէ տարբեր անձինք տեսնել այս երկու Ներսեհներուն մէջ, առանց անոնց մերձաւոր աղերսը որոշել կարենալու։

Վայրապար ջանք պիտի ըլլայ հետապնդել թէ Ներսեհ Բ. մինչեւ երբ վարած է իշխանութիւնը։ Լոկ ենթադրութեամբ զինքը 652ին տակաւին կենդանի եւ Կոստանդին ողջունելու գացող Շիրակացւոց գլուխ դրինք։ Եթէ Սեղբեստրոսի վարուց մէջ յիշուած Ներսեհը՝ ըլլար Ապեհիւպատն ու Պատրիկը, ինչպէս կ'ընդունի Տէր-Մովսէսեան (Ձե. յջ.), ուրեմն ըստ մեզ՝ Ներսեհ Գ.՝ յաջորդ Ներսեհ Բ.ի, այն ատեն 678 թուականով, որ Սեղբեստրոսի վարուց թարգմանութեան թուականն է, ստացած կ'ըլլայինք եզր մը, որմէ յառաջ պատահած պէտք էր ըլլար Ներսեհ Բ.ի մահը։ Սակայն Խալաթեանց մտադիր կ'ընէ, որ վերոյիշեալ թարգմանութեան մէջ խնդիրը Ներսեհ Վրաց իշխանին մասին է, իսկ նա Կամսարական չէ, այլ փեսայ Կամսարականաց (Խալաթեանց, ԱՄ. Իէ. 5)։ Այս դիտողութեամբ ամէն կռուան կը կորսնցնենք Ներսեհի Բ.ի իշխանութեան տեւո-

ղութիւնը մերձաւորապէս ստուգելու։ Հրաժեշտ կ'առնում Է. դարու առաջին կէսէն եւ զայն լեցնող Մեծ Կամսարականէ զբաղելու համար անոր Մեծագոյն յաջորդով։

### Ե) Ներսէս Գ.։

Հայաստանի քաղաքական վիճակը 652է ետք փոխուած էր։ Պարսկական պետութիւնը հիմնովին կը ցնցուէր հարաւաշունչ փոթորիկէն եւ արաբական բանակները Թ. Ռշտունւոյ առաջնորդութեամբ կը տիրանային Հայաստանի պարսկական բաժնին՝ 654ին։ Այնուհետեւ Արաբը կը ստանձնէր մրցակցի դերը՝ Բիւզանդիոնի հանդէպ։ Հայաստան կ'ենթարկուէր արաբ ոստիկաններու իրաւասութեան, բայց կը կարգուէին միաժամանակ հայ իշխաններ, սպարապետներ։ Արաբական տիրապետութեան տակ առաջին հայ իշխանը կ'ըլլար Համազասպ Մամիկոնեան, որ 657—658ին Հայաստան վերագրաւող բիւզանդացիներու ծառայութեան կը նուիրուէր եւ բիւզանդական տիտղոսներով կը հարստանար։ Սակայն Արաբացիք դարձեալ կը նուաճեն Հայաստան եւ 662ին Գրիգոր Մամիկոնեան կը նշանակեն իշխան Հայաստանի։ Սա խաղաղութեան շրջան մը կը բոլորէ եւ 685ին կը սպաննուի Խազարներու արշաւանքը զսպելու աշխատած ժամանակ։ Յաջորդը՝ Աշոտ Բագրատունի (686) Արաբներու ընտրելին է եւ իշխանութեան կը հասնի անոնց կամքով։ Սակայն

երբ Յուստինոս Բ. 688ին կրկին անգամ կը մտնէ Հայաստան հաշտ աչօք չի նայիր իր թշնամիէն կարգուած իշխանին։ Նա զԱշոտ չափազանց զօրաւոր եւ հետեւաբար վնասակար կը գտնէ, եւ որպէս զի իշխանութեան դէպի Արաբացիները հակող նժարը հակակշռէ՝ կամսարական մը կ՚անցնէ իշխանութեան գլուխ։ Այս առթիւ ահա հայ եւ արտաքին մատենագիրներ կը յիշատակեն՝ Ներսեհ (Գ.) Կամսարականն:

Վերն արդէն այս Ներսեհը ներկայացուցի իբր յաջորդ Ներսեհ Բ.ի։ Ասոնց աղերսի մասին պատմագիրներու մէջ մեծ տարաձայնութիւն կը նշմարուի։

Չամչեան, Բ. 373 յջ. յենլով Յ. Մամիկոնեանի առասպելախառն պատմութեան վրայ եւ անոր կցելով Գր. Արշարունւոյ եւ Արշարունեաց եպիսկոպոսներու գաւազանագրքի տեղեկութիւնները Ներսեհի հայրը կը կոչէ Վահան։ Սա որդի է Սմբատ Մամիկոնեանի եւ միայն մօր կողմանէ կամսարական (Չամչ. Բ. 336—339), կը մասնակցի 630ի (?) կռիւներուն, եւ ապա կը յաջորդէ իր հօր՝ Տարօնի տանուտէրութեան մէջ (անդ, 342—343)։ Այս ամէնը՝ համաձայն է Յովհ. Մամիկոնեանի, որ իբրապէս կամսարական կը կոչէ զՎահան[1] (էջ 16, 26, 28, 31—36, 44—47), բայց թէ ինչպէս եւ երբ նա ձեռք

1 Մեր մատենադարանի թիւ 314 ձեռագիրն ալ թուղթ 238 յիշատակարան մը կը բովանդակէ, ուր կ՚ըսուի. «յիշխանութեան Մամիկոնեան Վահանայ, զոր մայրենեօք Կամսարական կոչեն, որ երեսներորդ երրորդ էր ի Մուշեղայ» (Տաշեան, Ցուցակ, 749)։

կը ձգէ նաեւ կամսարական հողերը, այդ մասին կը լռէ: Չամչեան լոկ կարծեօք կը խօսի եւ ոեւէ ապացոյց չունի Վահանի եւ Ներսեհ Գ.ի արենակցութեան: Չամչեանի կարծիքը անայլայլ կ'ընդգրկէ Justi, Iranisches Namenbuch, էջ 224, թիւ 64. "Sohn des Vahram, Bruder (!) der Märtyrerin Susanna († 715!) und des Gagik". Սամ. Անեցի, 409, Ասող., 129. Չամչ. Բ. 375. Brosset, Deux histor. 34. — Չամչեանի անհիմն տեսութեամբ Վահան հայր էր Ներսեհի եւ Նախընթաց տանուտէր կամսարականաց: Բայց ասոր հակառակ աչքի կը զարնէ, որ ոչ մէկ տեղ ուր Վահան անունը յիշուած է՝ "Տէր Շիրակայ եւ Արշարունեաց", յորջորջանքը կցուած կը գտնենք, ո՛չ Գրիգորիս Արշարունւոյ ձօնին (Պատկեր, 1890/91, էջ 143), ո՛չ Արշարունեաց Եպիսկոպոսներու Գաւազանագրքին յառաջաբանին մէջ — ասոր հակառակ երբ Ներսեհ կը յիշուի, չի մոռցուիր որ նա է "Տէր Շիրակայ եւ Արշարունեաց": Վահան պարզապէս "Պատրիկ" կը յորջորջուի, ինչ որ սակայն տանուտէրութիւն չ'ենթադրեր: Չեմ կրնար հաւանիլ նաեւ Տէր-Մովսէսեանի, որ կը մերժէ թէեւ Չամչեանի եւ Էմինի (Ասողիկ, էջ 73, տես նաեւ Ստ. Մալխասեանց, էջ 354, ծն. 81) հայրութեան վարկածը, բայց Վահան ու Ներսեհ մի եւ նոյն անձ կը հռչակէ (Սոկր., յոջբ., էջ 2Է): Առ այս ուրիշ ապացոյց չունի բացի Ասողիկի եւ Գ.ր. Արշարունւոյ ձօնին մէջ տեսնուած հակասութենէն: Ասողիկի համեմատ Գրի-

գորիս Արշարունեաց քորեպիսկոպոսը իր Մեկնութիւն Արարածոցը կը գրէ խնդրանօք Ներսեհի (Աստղիկ, 101), մինչդեռ գրութեան հեղինակը Վահան կը կոչէ իր մեկենասը. «Ջհարկ բանիս որ պահանջեցեր յինէն փութապէս՝ յաղագս աստուածային ընթերցուածոցն ով Կամսարականդ Վահան Պատրիկդ հատուցի քեզ յամրագոյն» (Պատկեր, 1890/1, էջ 143)։ Պարզապէս անըմբռնելի է, թէ ինչպէս Տէր-Մկրտչեան հեղինակի վկայութեան դէմ կրնայ պնդել, որ «Աստղիկը ունեցել է հաստատ աղբիւրը» (անդ, 2Է)։ Նա այսպէս կը տրամաբանէ. Գրիգոր Ջորոփորեցի եւ Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոս մէկ անձն են։ Մի եւ նոյն անձը կը թարգմանէ Սեղբեստրոսի վարքը եւ կը գրէ Արարածոց Մեկնութիւնը։ Առաջինը կատարած է Ներսեհի խնդրանօք (յոջ. ԾԷ, 2Ե. եւ Սեղբեստրոսի վարքին նախընթաց էջը) — ուրեմն նաեւ Արարածոց Մեկնութիւնը պէտք է կատարած ըլլայ Ներսեհի խնդրանօք — հետեւաբար Վահան = Ներսեհ։ Նմանութենէ առնուած այս ապացոյցը արդէն տրամաբանօրէն վատոյժ է։ Բաց աստի կը բաւէ յիշեցնել, որ Ջորոփորեցի եւ Արշարունեաց Քորեպիսկոպոսը մէկ անձ չեն, եւ թէ Սեղբեստրոսի վարուց Ներսեհը Կամսարական ու Տէր Շիրակայ եւ Արշարունեաց չէ (Խալաթեանց, անդ, 5—8, իմ յօդուածս՝ ՀԱ. 1924, թիւ 1—2[1])։ Վահանի եւ Ներ-

[1] Հաւանօրէն Սեղբեստրոսի վարուց Ներսեհն է, զոր կը յիշէ Յովհ. Կթ. իբր «իշխան Վրաց»։

սեհի նոյնութեան դէմ ունինք ուրիշ իրողութիւն մը։ Թալինի արձանագրութեան համեմատ Ներսեհ ունէր որդի մը՝ Հրահատ անուն, իսկ Վահան՝ ըստ Արշարունեաց եպիսկոպոսներու գաւազանագրքին ուստր եւ դուստր Գագիկ եւ Շուշան։ Շուշան կը մարտիրոսանայ 700ին, երբ Գագիկ Վարդանակերտի եկեղեցւոյն նաւակատիքը կը կատարէր — ուրեմն երկուքն ալ առ նուազն 20—25 տարեկան են եւ 688—690, երբ Թալինի արձանագրութիւնը կը փորուէր, արդէն ծնած։ Եթէ Վահան ու Ներսեհ մէկ անձ ըլլային, Հրահատի հետ անպատճառ կը յիշուէին նաեւ միւս երկուքը։

Կը մնայ երրորդ ենթադրութիւն մը, զոր բերանացի արտայայտած է Ակինեան՝ այն է եղբայրութեան վարկածը (Մորչիգովսկի, Ա, էջ 52, ծն. 5)։ Դրական ապացոյցներ կը պակսին թէ ընդդէմ եւ թէ ի կողմ։ Սակայն վարկածս սա առաւելութիւնը ունի, որ պատմական ոեւէ հակասութիւն չի պարունակեր եւ եղած դժուարութիւններն առանց պատիպատ մեկնութիւններու կը հարթէ։

Դառնանք այժմ Ներսեհի։ Հայ մատենագիրներն անոր կեանքէն շատ քիչ բան կը հաղորդեն։ Ասողիկ Բ. բ. պահած է ամենէն ընդարձակ տեղեկութիւնը. “Ի գալ չորրորդ ամին՝ Յուստինիանոս ինքն խաղացեալ զօրու ծանու՝ եկն ի կողմն մի Հայոց, ի լեառն որ կոչի Արարտակ, եւ յերկս բաժանեալ զզօրս իւր՝ առաքէ ի Հայս, ի Վիրս եւ յԱղուանս, եւ կոչեալ առ

ինքն զամենայն իշխանս աշխարհացս այսոցիկ, եւ ոչ ի կամաց այլ ի հարկէ գնացեալ առ նա: Իսկ նորա զոմանս յիշխանացն ընդ իւր առեալ, եւ զոմանց զորդիսն պատանդս խնդրեալ, ընդ որս եւ զկաթողիկոսն Հայոց զՍահակ հանդերձ եպիսկոպոսօք արգելեալ առ ինքն, եւ զոմանս յիշխանացն արքունատուր պատարագօք պատուեալ՝ կացոյց իշխանս աշխարհացն՝ զՆերսեհ Շիրակայ տէր, կոմս Կապոյտիրայ Հայոց իշխան... Եւ Ներսեհ եկաց իշխան Հայոց ամս դ.: Սամուէլ Անեցի, Կիր. Գանձակեցի երեք տարի կուտան Ներսեհի մեծագոյն իրաւամբ: Նաեւ Narratio de rebus Armenorum կը ճանչնայ *ο Νερσεχης Καμψαραχαν ετη γ՝* (ամս երիս) յաջորդ Աշոտ Բագրատունւոյ (685—688) եւ նախորդ Սմբատ Բագրատունւոյ (692—710/1, † 726), եւ որովհետեւ Թէոփանոսի համեմատ Յուստինոսի երկրորդ գալուստն ի Հայս՝ կը պատահի 6179 = 687ին՝ Ներսեհի իշխանապետութիւնը տարածուած է 688—691/2 (Marquart, Streifzüge, 443, 514):

Թէ որքան ժամանակէ ի վեր Ներսեհ Տանուտէր էր երբ իշխան կարգուեցաւ, չգիտենք, բայց բաւական արժանիք վաստկած եւ կարողութիւն ցուցուցած ըլլալու էր նաեւ անհատապէս, թէեւ իր տոհմն արդէն ազդեցիկ յանձնաբարութիւն էր իրեն համար կայսեր առջեւ՝ որ արաբական ազդեցութիւնը հակակշռել կը դիտէր: 687ին Ներսեհ թէեւ արաբական իշխանութեան տակ էր, բայց յունական "կոմս" տիտ-

ղոսը կը կրէր (Ասողիկ, անդ)։ Ասոր ալ սկզբնաւորութիւնը Ներսեհի նկատմամբ կ'անգիտանանք, բայց ծանօթ է, որ բիւզանդական կայսրները նոյն իսկ արաբական բաժնի վրայ գտնուող բայց Բիւզանդիոնի հաւատարիմ մնացող Հայ Մեծամեծներու բիւզանդական տիտղոսներ կու տային, անոնց հաւատարմութիւնը վարձատրելու եւ ամրապնդելու եւ իրենց անուանական գերիշխանութիւնը ցուցնելու համար։ Հայ նախարներն կը ստանային կոմս, պատրիկ, կուրապաղատ տիտղոսները (Laurent, L'Arm. entre Byz. et l'Islam, 186)։ Յուստինոս տիտղոսներ կը շռայլէ իր պաշտպանեալին. “պատրիկ, ապհիւպատ, կուրապաղատ„ կ'ըլլան Աշոտի հակադրուած կամսարական Ներսեհին պատուանունները։ Ներսեհ առաջին կամսարականն էր, որ այս տիտղոսները եւ իշխան Հայոց անունը՝ կը միացնէր “Տէր Շիրակայ եւ Արշարունեաց„ սովորական յորջորջանքին։ Նա իններորդն է Հայ իշխաններու շարքին մէջ (Laurent, անդ, 79, 97, 186, 203, 334, թիւ 9)։

Իր եռամեայ իշխանութեան մասին մանրամասնութիւններ չունինք։ Աւելի խաղաղասէր քան պատերազմիկ բնութեան տէր եղած կը թուի։ Գրականութեան եւ արուեստից զարկ կու տար թարգմանութիւններ յանձնելով եւ եկեղեցիներ կառուցանելով։ Իր բարոյական աջակցութեամբ եւ իր հրամանով գլուխ կ'ելլէր Սոկրատի եկեղեցական Պատմութեան թարգմանութիւնը, որուն կատարողը Մեծ կամսարակա-

նին անունը կ՚անմահացնէ. “Ով Տէր Ներսէհ կամսարական, ապոհիւպատ պատրիկ, որ եկեղեցեաց ես շինող, միշտ զխաղաղութիւն կալցիս ի Քրիստոսէ„ (տես նաեւ Տաշեան, Ցուցակ, էջ 926—927)։

Ներսէհի շինած եկեղեցիներէն է հաւանօրէն Թալինի Մեծ Եկեղեցին կամ կաթողիկէն (Տէր-Մկրտչեան, անդ, ղբ—ղգ), որուն ճարտարապետութիւնը մանր կը քննէ Ստրչիգովսկի Ա, 167—173։ Դժբախտաբար կը պակսի շինութեան արձանագրութիւն մը։ Ներսէհ ապոհիւպատ պատրիկն է առանց ոեւէ կասկածի Թալինի փոքր եկեղեցին՝ Ս. Աստուածածինը շինողը։ Գր. Յովսէփեանի եւ Օրբելիի (Хр. Вост. 1915, 300—306) կարծիքով՝ եկեղեցիս կառուցուած է 630ին, մինչ Շահխաթունեան, Բ, 50, Մեսրոպ Վրդ., Ազգ. Հանդ. Ժ. 16 (1907), 191—192, Ստրչիգովսկի, Ա, 50, միակ հնարաւոր եւ ուղիղ տեսութիւնը կը պաշտպանեն, զայն իբր 690ին դնելով։ Շինութեան արձանագրութիւնը, որ կամսարականաց 688էն ստացած տիտղոսները կը պարունակէ, ոեւէ վէճ ու տարակոյս վճռականօրէն կը լուծէ։

+ ԵՍ ՆԵՐՍԵՀ ԱՊՈՀ[Ի]ԻՊԱՏ ՊԱ[ՏՐԻԿ
ՇԻՐ]ԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ ՏԷՐ ՇԻ |
ՆԵՑԻ ԶԵԿԵՂԵՑԻՍ ՅԱՆՈՒՆ ՍՐԲ[Ո]Յ
ԱԾԱԾՆԻՆ Ի ԲԱՐԵԽԱՒՍՈՒ | ԹԻՒՆ ԻՆՁ
ԵՒ ՇՈՒՇԱՆԱՅ ԱՄՈՒՍՆՈՅ ԻՄՈՅ ԵՒ |
ՀՐԱՀԱՏԱՅ ՈՐԴՒՈՅ ՄԵՐՈՅ +

Տես՝ Ալիշան, Այր. 138, Շահխաթունեանց, Բ, 50. Կոստանեանց, 2. Գր. Յովսէփեան, անդ, Ճշգրտագոյն ընթերցուածը՝ Орбели, Христ. Вост. III, 1915, 301. Ստրչիգովսկի, Ա, 50, իսկ ճարտարապետութիւնը՝ էջ 161—163։

Ըստ արձանագրութեան եկեղեցին շինողը եղած է ապհիւպատ Պատրիկ՝ ուրեմն Ներսեհ Գ. 688—691։ Հոս կը տեղեկանանք նաեւ, որ Ներսեհ Գ. ունէր որդի մը՝ Հրահատ, եւ թէ ամուսինը կը կոչուէր Շուշան։ Մինչ Ներսեհ դարուն պատմագրին՝ Ղեւոնդի մօտ տեղ չէ գտած, իր ամուսնին՝ Շուշանի անունը լռութեան չէ մատնուած բարեգործութեան մը շնորհիւ։

Ներսեհի իշխանութիւնը շատ կարճատեւ էր։ 691/2ին Սմբատ՝ որդի Աշոտոյ "որ արդէն զօրավար ու սպարապետ էր„ Հայոց երկիրը կը հանէ Յունաց իշխանութենէն ի նպաստ Արաբաց, որոնք կը վարձատրեն կարգելով զինքը Հայոց իշխան։ Արիւնհեղութեան եւ աւերի շրջան մը կը սկսի վերստին։ Խազարներու ասպատակը (693), Արաբներու գերփումները կը գրգռեն Սմբատի հայրենասիրութիւնը Արաբաց դէմ. սաստիկ ջարդ մը կու տայ անոնց Վարդանակերտի մերձ 698/700ին եւ կ'անցնի Յունաց կողմ։ Ղեւոնդ, էջ 25, կը պատմէ. Արաբներէն "նուազունք ի փախուստ դարձեալ իբրեւ արք Յ՝ ապաւինէին առ տիկինն ՇՈՒՇԱՆ։ Զորոց զկնի հետամուտ եղեալ Սմբատ որդի Աշոտի զօրօքն իւրովք՝ կամէր արկանել զփախստեայսն ի սուր

սուսերի։ Որում ընդ առաջ ելեալ տիկինն Շուշան՝ բազում աղերսանօք եւ դաշամբք թափէր զնոսա մերկս եւ բոկս եւ հետեւակս եւ վիրաւորս, զորոց առեալ պատէր զվէրս եւ ողջացուցանէր եւ զգեցուցանէր հանդերձիւք։ Տայր եւ գրաստս յիւրոց երամակաց եւ առաքէր առ իշխանն իսմայէլի Աբդլմէլէք՝ վասն որոյ եւ ի նմանէ բազում շնորհակալութիւն ընկալեալ, եւ մեծամեծ պատիւս առաքէր նմա„։

Այս մեծանձն գործը սակայն արաբական վտանգը կասեցնելու անկարող էր։ "Ոգբայ ոմն զօրապետ մեծ հանդերձ զօրօք բազմօք շրջէր ընդ կողմամբք Վանանդ„ (Յ. կաթ. 54)։ Թշնամի բանակի մը այս մերձաւորութիւնը սպառնալիք էր Շիրակայ եւ Արշարունեաց, եւ Կամսարականք չէին կրնար անտարբեր մնալ։ Կամսարականներու պետը միացած Վանանդացւոց՝ պարտութիւն մը կը պատրաստէ թշնամիներուն՝ իբր 701/2ին. "Ընդ ապա հասեալ ի վերայ Կամսարականն հանդերձ ազատօքն Վանանդայ, կոտորեցին սպառսպուռ զզօրս նորա եւ ինքն (Ոգբայ) փախստեայ անցեալ գնայր առ ամիրապետն իւր„ (Յովհ. կաթ. 54), Ասողիկ աւելի կտրուկ է. "Օհբայ զօրագլուխ Տաճկաց վանի ի Կամսարականացն եւ գնայ գոյժ տալ ամիրապետին„ (Ասողիկ, 101)։ Պատմիչները կը գոհանան պարզապէս յիշելով որ Կամսարականներու արդիւնք էր այն յաղթութիւնը. եւ երբ Յովհ. կաթողիկոս "Կամսարականն„ ձեւը կը գործածէ, ինքնաբերաբար կը մտածենք նշանաւոր եւ հանրա-

ծանօթ Կամսարականի մը վրայ, եւ արդէն սովորաբար Ներսեհ Գ. կը համարուի Ողբայի դէմ ճակատողը (Չամչեան, Բ, 378. Laurent, 372)։

Ո՞րքան ժամանակ Ներսեհ կ'ապրի իբր Տէր Շիրակայ եւ Արշարունեաց՝ 691/2ին Սմբատի տեղի տալէ վերջ։ 695/6ին տակաւին ողջ էր, ինչպէս կը հետեւի Սոկրատի Թարգմանչին խօսքէն (Տէր-Մկրտչեան, ՉԴ, 689)։ Տէր-Մկրտչեանի համեմատ նա «մինչեւ 694 թիւը Հայաստանի կառավարութեան մեծահոգ գործերը վարելով ծերունի հասակում առանձնանում է ՚ի վանս Ս. Աստուածածնի որ ի Վաղարշակերտ յերկրին Բագրեւանդայ»։ Վերջին խօսքերը Չամչեանէ առնուած են (Բ. 373), որ սակայն զանոնք Վահանի նկատմամբ գրած է։ Տէր-Մկրտչեան համաձայն իր տեսութեան (Վահան = Ներսեհ) զանոնք Ներսեհի կը մերձեցնէ։ Տեսանք որ իրաւունք չունի։ Ներսեհի մահը կամ գործէ քաշուիլը պատահած է հաւանօրէն 701/2է վերջ։

Չեմ կարող ըսել թէ սոյն Ներսեհին հետ ունէ աղերս եւ թէ պատմական ինչ հիմ ունի Խորենացւոյ Աշխարհագրութեան (Սուքրեան, 1881, 18) սա խօսքը. Պոնտիկայի իշխանացաւ *իմաստունն Ներսեհ Կամսարական Պատրիկն Շիրակայ եւ Արշարունեաց Տէրն* (Տէր-Մկրտչեան, Ղ. Ալիշան, Շիր. 5)։

Քանի մը խօսք եւս Վահանի մասին։ Է.—Ը. դարուն Վահան Կամսարականի մը գոյութեան

միակ վաւերական վկայ կը նկատեմ Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոսը՝ եւ Արշարունեաց եպիսկոպոսներու գաւազանագիրքը։ Ասոնց Վահանը ըստ իս ոեւէ աղերս չունի Ց. Մամիկոնեանի Վահանին հետ։

Գրիգորիս Արշարունի, ինչպէս յաճախ յիշուեցաւ, իր Մեկնութիւն Արարածոցը կը յօրինէ Վահան կամսարական Պատրիկի խնդրանօք ու իր յառաջաբանին մէջ ի վեր կը հանէ այս իրեն համար պատուաբեր պարագան եւ գովասանական խօսքեր կ'ուղղէ անոր. “Զհարկ բանիս զոր պահանջեցեր լինէն փութապէս յաղագս աստուածային ընթերցուածոցն, ով կամսարականդ Վահան Պատրիկ, հատուցի քեզ յամրագոյն”։ Վահան է այր “մեծ եւ ողջախոհ մտօք, պսակեալ ծերութեամբ եւ իմաստութեամբ իբր թագաւոր յԱստուծոյ ի ժամանակիս ի միջի մերում” (Պատկեր, 1890/1, 143)։ Այս խօսքերն եթէ ծայրայեղ երախտագիտութեան մը թելադրանք չեն, այլ լուրջ իրականութեան հաւատարիմ արտայայտութիւնը, այն ատեն հարկ է ընդունիլ, որ Վահան քաղաքական փայլուն ասպարէզ մը ունեցած է։ Գրիգորիսի այս խօսքերը կարդացած ժամանակս վայրկեան մը կը տատամսիմ, թէ արդեօք այդ “իբր թագաւոր” փառաբանուողը՝ “Հայոց իշխան” ներսեհը չէ՞։ Սակայն Ներսեհի եւ Վահանի միութեան դէմ խօսող պատճառներն այնքան ուժեղ կը գտնեմ, որ ի վերջոյ կը միտիմ ճարտասանական չափազանցութիւն տեսնել Գրիգորիսի գովքին մէջ։

Վահանի կը հանդիպինք նաեւ Արշարունեաց եպիսկոպոսներու Գաւազանագիրքին մէջ. 706ին «եհաս լուր աւետեաց թէ Շուշան Կամսարական դուստր Վահանայ պատրկի գլխատովանող անուն ժառանգեաց վասն Քրիստոսի Աստուծոյ չարչարեալ ի Խառան Միջագետաց» (Տաշեան, Ցուցակ, 656)։ Այդ կը պատահէր 705/6ի աւերածներէն եւ ջարդերէն ետք, երբ Արաբացիք զՇուշան իրենց հետ գերի կը տանէին (Չամչեան, Բ, 382. Ալիշան, Շիր. 5)։ Չամչեան կ'աւելցնէ. «էր յայնժամ եղբայր սրբուհւոյն Գագիկ՝ ի Վարդանակերտ եւ շինէր անդ զեկեղեցի, եւ ի կատարել զնաւակատիսն՝ եհաս առ նա լուր նահատակութեան քեռ իւրոյ Շուշանայ, ընդ որ ուրախ լեալ նորա՝ կատարեաց անդէն եւ զտօն յիշատակի քեռն։ Այս աւանդի ի պատմութիւնս եպիսկոպոսացն Արշարունեաց, այս ինքն Կամսարականաց, եւ ի Ճառընտիրս եւ կանոնագիրս ի գլ. Լթ. ի վերջն»։ Գաւազանագիրքն իրապէս կ'ըսէ. 704ին «արար զնաւակատիս եկեղեցւոյն Վարդանակերտի Գագիկ Կամսարական» (Տաշեան, անդ)։ Բայց թէ Գագիկ եղբայր էր Շուշանայ եւ որդի Վահանայ այդ մասին բացայայտ վկայութիւն չեմ գտներ առջեւս եղած աղբիւրներուն մէջ։ Արդեօք Չամչեանի խօսքը մակաբերութի՞ւն է լոկ։ Ինչ որ ալ ըլլայ ոեւէ դժուարութիւն չի պարունակեր, ուստի Չամչեանի կարծեաց համեմատ պատճառաբանեցի Վահանի եւ Ներսեհի աղերսը վերը քննած ժամանակս։

Գագիկի նկատմամբ անդրագոյն տեղեկութիւններ կը պակսին։ Իսկ Վահանի մասին Չամչեան, Բ, 373, կը գրէ. “Վահան կամսարական, որ կոչիւր Պատրիկ Մեծ, տեսեալ զտառապանս ազգին եւ զվրդովումն աշխարհին՝ եթող զամենայն եւ առանձնացաւ ինքն ի վանս Ս. Աստուածածնի, որ ի Վաղարշակերտ յերկրին Բագրեւանդայ, եւ անդ կեայր խարազնազգեցութեամբ, պահօք եւ տքնութեամբ իբրեւ զմի ի խստակեաց ճգնաւորաց, եւ զի էր ընթերցասէր յոյժ եւ տեղեակ գրոց, հանապազ դեգերէր ի կարդացմունս սուրբ կտակարանաց եւ բանից Սրբոց Հարց, եւ քաղցրանայր ի նոսին...„, էջ 375. Գր. Արշարունւոյ Մեկնութիւնը “ընթերցեալ Վահանայ... ուրախ եղեւ յոյժ, եւ ինքն յետ սակաւուց վախճանեալ հանգեաւ ի Քրիստոս„։ Այս խաղաղ մահը ի դէպ չի գտներ Ալիշան (Շիր. 5), “Նա մանաւանդ յիշէ ոմն պատմիչ (թէեւ ոչ յանուանէ), թէ յամի 705 ‘զՇիրակայ Տէրն դարուն յԱսորիս‘, թերեւս նոյն ինքն Վահան կամսարականն էր, հանդերձ խոստովանող դստերբն Շուշանաւ„։ Եթէ պատմական է այս դէպքը, զարմանալի չէ՞ Գաւազանագրքին լռութիւնը, երբ կրնար ու պէտք էր յիշել Շուշանայ հետ միասին նաեւ հօրը գերութիւնը։ Բաց աստի անանուն պատմիչը “Շիրակայ Տէրն„ գերուած կ'ըսէ, իսկ Վահան Տէր չէր Շիրակայ։ Աւելի կարելի էր Ներսեհի կամ Հրահատի վրայ մտածել, եթէ անանուն պատմիչը արժանահաւատ ըլլար եւ ժամանակը յարմարէր։ Իսկ այս

մասին դատաստան կտրելու ի վիճակի չեմ, որովհետեւ Ալիշանի Պատմիչը չեմ ճանչնար։

—

Է. դարը կամսարականներու փառքին եւ ոյժին գագաթնակէտը կը նշանակէ։ Անոնք մագլցեցին դէպի վեր առանց մասնաւոր ձգտումներու եւ նուաճողական նպատակներու, այլ պարզապէս արտաքին հանգամանքներու նպաստաւոր ազդեցութեամբ եւ բիւզանդական կայսրներու գիտումնաւոր բարեացակամութեամբ։ Տարակոյս չկայ, որ Է. դարու կամսարականները ցուցուցած են անհատական արժանիք եւ արդիւնք, բայց՝ ուղղուած իրենց հողերուն զարգացման եւ իրենց ժողովրդեան բարօրութեան։ Հայաստանի վարչութիւնը կամ իշխանապետութիւնը գրաւելու ձգտող մեծագոյն նախարարութիւններ կային, որոնց հետ մրցելու եւ որոնց դէմ նախանձախնդրական շարժում սկսելու ատակ չէին կամսարականները, իրենց համեմատական տկարութեամբ, եւ աւելի ճիշդ՝ չէին ուզեր այդպիսի ազգաւեր մրցակցութիւն մը սկսիլ՝ իրենց տոհմային աւանդական ազգասիրութեան եւ իրապէս ասպետական ոգւոյն զօրութեամբ։ Անոնք համեստ ու հայրախնամ Տանուտէրերն են Շիրակայ եւ Արշարունեաց, եւ կը մնան՝ նոյն իսկ այն ատեն, երբ կայսերական հզօր տրամադրութեամբ՝ խռովայոյզ, քայքայած ու պառակտած երկրին գլուխ ըլլալու հրաւէր կը ստանան։ Հարկաւ՝ կայսերական այն կարգադրութեան մէջ

լոկ կամսարական արժանիքի նկատում առնելու չենք։ Այո, կամսարական տոհմը դարերէ ի վեր անխախտ վստահութիւն եւ հաւատարմութիւն ցոյց տուած էր հանդէպ կայսեր. բայց այդ հաւատարմութիւնը կրնար վարձատրուիլ սոսկ տիտղոսներով, որոնք տիտղոսաւորին ոյժի եւ իրաւունքներու իրական ընդլայնում չէին շնորհեր։ Իսկ Յուստինոս Բ. աւելի յառաջ կ'երթայ եւ կամսարականի մը կը յանձնէ ամբողջ Հայաստանի իշխանութիւնը, նա հարուածել եւ խոնարհեցնել կը դիտէ ուրիշ տոհմ մը, որուն քաղաքականութիւնը չէր խորշած թիկունք դարձնելու իրեն եւ ապաւինելու Արաբացւոց։ Այդ տոհմն էր Բագրատունեաց տոհմը, որուն մէկ ներկայացուցիչը՝ Աշոտ Արաբացւոց շնորհիւ իշխան եղած էր։ Կայսեր ընտրութիւնը պատուաբեր էր կամսարականաց, բայց անշուշտ կայսրը մտքէն չէր անցներ. որ անով՝ առանց ուզելու կամսարականաց կործանման հիմ կը դնէր։ Կամսարականք ակամայ կը մղուէին ասպարէզ մը, ուր նախանձ ու տոհմային իրարաջնջում կը տիրէր։

Է. դարուն Բագրատունիները յայտնապէս կը նկրտէին Հայաստանի ղեկը գրաւել՝ վտանգելով եւ նոյն իսկ կորստեան մատնելով այն տոհմերը, որոնք Ե. դարէ ի վեր հայ բախտին իմաստուն եւ քաջ ղեկավարներն եղած էին։ Բագրատունիներն իրենց դիտաւորութիւնը չէին կրնար իրագործել առանց Մամիկոնեանները տկարացնելու, ջլատելու, մահացնելու։ Անոնց ատելութիւնն ու թշնամութիւնը Մամիկոնեանց

դէմ՝ պարզ է եւ հետեւութիւն Մամիկոնեանց դիրքին։ Կամսարականները, թէեւ աջակից Մամիկոնեանց, խնամի եւ գաղափարակից՝ ազգային հարցերու մէջ, բայց երկրորդական եւ հետեւող դեր խաղացած էին եւ երբեք՝ առաջնակարգ, գոհ էին իրենց հողերով, եւ անձնատուր անոնց բարգաւաճման։ Այս պատճառաւ Բագրատունեաց ուղղակի թշնամական հակառակութեան չէին բախած, այլ առ առաւելն իբր Մամիկոնեանց մօտերիմ տոհմ՝ կասկած ու զգուշութիւն կը ներշնչէին։ Բայց ահա յանկարծ փոփոխութիւն տեղի կ'ունենայ Կամսարականաց դիրքին մէջ, եւ այն՝ ընդդէմ Բագրատունեաց։ Աշոտ կ'անտեսուի եւ Ներսեհ կ'ընտրուի։ Այսով Կամսարականք կը դառնային առարկայ նախանձի եւ զոհ բագրատունեան տոհմային իշխանատենչ քաղաքականութեան։ Սմբատ Բագրատունի՝ Ներսեհի յաջորդն արդէն ձեռք կ'առնու Մամիկոնեաններն ու Կամսարականները տկարացնելու ծրագիրը (Laurent. 204)։ Անկարելի է այդ ծրագրին իրագործումը քայլ առ քայլ հետապնդել։ Սմբատ հիմ կը դնէր քաղաքականութեան մը, որ հօրենական հողային ժառանգութեան հետ միասին կը փոխանցուէր յորդւոց յորդի, եւ մեզի ծանօթ է՝ յամառ խուլ կռուին միայն վերջնական արդիւնքը։ Ը. դարու վերջը Կամսարականք Հայաստանէ կը ստիպուին հեռանալ։

## § 9. Կամսարականները Ը. դարուն:

Զ. դարէն շատ աւելի ամուլ է Ը. դարու Կամսարականաց պատմութիւնը, ցորչափ որ ներկայացուած է հայ պատմագիրներէ։ Ասոնք չէին կրնար մանրամասնօրէն նկատի առնուլ գործունէութիւն մը, որ լոկ տոհմային էր, գործունէութիւնը տոհմի մը՝ որ համազգային վաղանցուկ պաշտօնավարութենէ ետք կը քաշուէր իշխանապետական ասպարէզէն։ Յուշարձանային մեծագործութիւններն ալ դադար կ'առնուն, եւ անոնց հետ նաեւ արձանագրութիւնները կը լռեն Շիրակի մէջ, մինչեւ որ ուրիշ տոհմ մը գար նոր շրջան բանալու։ Աղբիւրներու տուած քանի մը տեղեկութիւններէն պայմանական հետեւութիւններ միայն կրնանք հանել։

Թալինի արձանագրութեան համաձայն Ներսեհ Կ..ի որդին էր Հրահատ, որ հաւանաբար հօրը կը յաջորդէր Շիրակայ եւ Արշարունեաց Տէրութեան մէջ։ Թէ Հրահատ իրապէս Տէր էր Շիրակայ եւ Արշարունեաց, նաեւ արձանագրօրէն հնարաւոր է ստուգել։

Տեկոր գետի արեւմտեան կողմ գտնուող Նախճաւան գիւղն ունի Ս. Ստեփանոս անուամբ հին եկեղեցի մը, որուն մօտ՝ “յերի եկեղեցւոյն ի թիկանց կուսէ յայտնեցան գետնափոր մուտք եւ քարեղէն սանդուղք իջից ի դամբանատուն քարաշէն, ուր եւ տեսան երկու տապանք արկղաձեւք, որմովք զատուցեալք յիրերաց„ (Ալիշան,

*Հիր.* 136)։ *Տապաններէն մին կը կրէ սա արձանագրութիւնը.*

1. Ա̆ԾԱ-ՀՐԱՄԱՆ[Ե]ԵԼԻՒՔ ԵՒ ՔՐԻՍՏՈՍԱԿՈՉ ՀՐԱԺԱՐ[ՄԱՆ] (sic)
2. ՄԱՄԲ Ի ՍՄԱ Է ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԸՆԴ ՀԱՐՍ ԻՒՐ
3. ԵՐԱՆԵԼԻ Տ̃Ր ԱՐՏԱՒԱԶԴ ԿԱՄ[Ս]ԱՐԱԿԱՆ ԱՊԱՀԻՒՊԱՏ
4. ՊԱՏՐԻԿ ԵՒ ԻՇԽԱՆ ՀԱՅՈՑ ՈՐԴԻ ՀՐԱՀԱՏԱ
5. ՊԱՏՐԿԻ ՇԻՐԱԿԱՑ ԵՒ ԱՇԱՐՈՒՆԵԱՑՆ Տ̃ՆՆ ԵՒ ԱՄՈՒՍԻՆ
6. ՇՈՒՇԱՆԱՑ ՄԱՄԻԿՈՆԵՆԻ

*Լաւագոյն հրատարակութիւնը մանր նկարագրութեամբ եւ նախորդ հրատարակութեանց հայոց գիտողութիւններով.* Орбели, Шесть армянскихъ надписей, VII—X Ов. 3. Надгробіе Артавазда Камсаракана, Хр. Вост. III. 1914, 77—81. *տխտ.* III։

*Ալիշան սոյն արձանագրութիւնը Զ. դարու կը համարի։ Հրահատը՝ որդի Արշաւրի եւ Արտաւազդը՝ թոռ։ Սակայն թէ գրերու նկարագիրը եւ թէ մասնաւորապէս, Ապահիւպատ, Պատրիկ տիտղոսները Ը. դարու առաջին կէսը մատնացոյց կ'ընեն (հմմտ. նաեւ՝ Մեսրոպ Վրդ. Ազգ. Հանդ. Ժ,* 16 [1907], 188—189. *Գր. Յովսէփեան, անդ)*։

*Հրահատի որդին՝ Արտաւազդ, զարմանալիօրէն ոչ միայն Ապահիւպատ ու Պատրիկ, այլ*

նաեւ իշխան Հայոց կը կոչուի արձանագրութեան մէջ։ Արդեօք Ներսեհէ ետք այդ տիտղո՞սն ալ ժառանգական դարձաւ։ Բայց ինչո՞ւ Հրահատ պարզապէս Պատրիկ կը յորջորջուի եւ ոչ միանգամայն Տէր Շիրակայ եւ Արշարունեաց։ Օրբէլի (Хр. Вост. III, 1915, 297—300) այդ պակասէն կը հետեւցնէ, որ Արտաւազդ մեռած էր հօր կենդանութեան ու չէր եղած Տէր Շիրակայ։ Սակայն † Արտաւազդի ամուսինը այլուր կոչուած է "Տիկինն Շիրակայ", ինչ որ մասնացոյց է Արտաւազդի տանուտէրութեան։

Այդ Տիկինն էր Շուշան Մամիկոնեան։ Ալիշան կը կարծէ, որ տիկնոջս կը պատկանի վերոյիշեալ տապաններէն երկրորդը։ Հաւանօրէն այս Տիկնոջ մասին խօսք կ՚ըլլայ Վահան Գողթնացւոյ պատմութեան մէջ։ Երբ 735ին Սուրբը 6 ամիս կը ճգնի Շիրակայ մէջ, բայց "Տիկինն Շիրակայ գաւառի երկուցեալ ի վրէժխնդրութենէ Արաբացւոց, ստիպեաց զՍ. Վահան Գողթնացի մեկնիլ երթալ ի սահմանս իւրոց" (Չամչ. Բ, 384. Ալիշան, Այր. 5)։ Ենթադրելով որ նա էր Շուշան՝ կին Արտաւազդայ, կը հետեւի, որ 735է յառաջ մեռած էր Արտաւազդ եւ Տիկինը առանձին կ՚իշխէր կամսարական հողերու վրայ։ Արդէն արձանագրութենէն ալ կը հետեւի որ Շուշան Մամիկոնեան տակաւին կենդանի էր, երբ Արտաւազդի դամբանը կը շինուէր եւ յայտնի կացութեան մէջ։ Տիկնոջ իշխանութիւնը եւ Վահանի դէպքը կը ցուցնեն,

որ Արտաւազդի որդիները — եթէ ունէր — առ Նուազն անչափահաս էին։

Որբելին համեմատ Հրահատ շինած է Նախճաւանի Ս. Ստեփանոս եկեղեցին (Двѣ строительскія надписи о построеніи церквы въ Нахчаванѣ, Хр. Вост. III, 1915, 297—300)։ գօտեձեւ արձանագրութեան քառորդը միայն մնացած է դժբախտաբար, այնպէս որ կարելի չէ հոն յիշուած անուններու աղերսը ճշդել վերջնականօրէն (արձանագրութիւնը՝ աւելի թերի ու սխալ տ. Նաեւ Ալիշանի եւ Գր. Յովսէփեանի մօտ)։ Որբելի կը կարծէ, որ հոն յիշուած Գրիգորը՝ հեղինակ արձանագրութեան, թոռն է Ներսեհի (Գ.), որդի Հրահատայ եւ եղբայր Արտաւազդայ, որ իբր կրտսեր չէր կարող դամբանաքարի վրայ "Տէր Շիրակայ" կոչուիլ եւ հօր յաջորդել։ Այս տեսութեամբ Հրահատի յաջորդած է Գրիգոր։

Հայաստան՝ 700—705ի խժդժութիւններէն վերջ խաղաղութիւն կը վայլէր շնորհիւ Արդուլ Ազիզի (731—742) եւ Մրուանի (742—744)։ Հրահատ ու Արտաւազդ հաւանօրէն օգտագործած պիտի ըլլան այդ հանգըստեան ժամանակը։ Մանաւանդ Ղուշան տիկնոջ զգուշաւորութիւնը նկարագրական է. նա չէր ուզեր ամենադոյզն պատճառը տալ արաբական վրէժխնդրութեան։ Բագրատունիները Օմէյատեանց վստահութիւնը գրաւած էին ի նպաստ խալիֆայութեան մղած պատերազմներով եւ մինչեւ 750 իրենց ստացուածքները կ'ընդար-

ձուկէին տիրանալով Բզնունեաց, Տարօնի, Մուշի եւ Բաղեշի (Laurent, 93)։ Ասով սակայն գրգռած էին Մամիկոնեանց զայրոյթը եւ վրէժու ոգին արթնցուցած։ Կամսարականք անտարբեր աչօք չէին կրնար դիտել հասարակաց թշնամի տոհմին այս ուժեղացումը եւ իրենց բարեկամ Մամիկոնեան տան չքաւորումը։ Հարուածը թէեւ անուղղակի բայց ոչ նուազ մահացու կրնար ըլլալ նաեւ իրենց համար։ Մամիկոնեանք կը մղուէին ինքնապաշտպանութեան՝ յուսահատ կատաղութեամբ եւ քէնով լեցուած։ Երկու մեծ տոհմերուն որոշիչ ընդհարումը անխուսափելի էր։ Կամսարականք ի հարկէ պիտի լծուէին Մամիկոնեանց դատին որ միանգամայն իրենցն էր։ Արաբացւոց մէջ 750ին հարստութեան փոփոխութիւն տեղի կ՚ունենար եւ բախտը կը ժպտէր Մամիկոնեանց։ Անգթութեամբ վրէժ կը լուծէին Բագրատունիներէն առանց իրենց հողերը վերագրաւելու։ Այս յաջողութիւնը Մամիկոնեանք կը պարտէին Աբբասեանց, որոնք հաշտ աչօք չէին նայիր Օմէյատներու ջերմ պաշտպան Բագրատունիներու։ Սակայն այս քաղաքագէտ տոհմը շուտով արժանացաւ նաեւ նոր պետերուն շնորհքին։ Մամիկոնեանք փոթորիկը նախատեսեցին եւ իրենք զիրենք փրկելու համար յաջողեցան տոհմային սպառնացող կռիւը փոխել համազգային ապստամբութեան՝ ընդդէմ խալիֆայութեան։ Սմբատ Բագրատունին անգամ մասնակից էր այդ խլրտումին։ Տարակոյս չկայ որ Կամսարականք գլխաւոր դերակատարներ էին ձեռ-

Նարկի մը մէջ՝ որուն մերձաւոր շարժառիթը կ՚ըլ-
լար արաբ հրամանատարին սպանութիւնը Շի-
րակի Կումայրի գիւղին մէջ։ Վերջնական հե-
տեւութիւնն էր սակայն Բագրեւանդի պարտու-
թիւնը 772ին, որով Հայաստան իր գլխաւոր
զօրավարները կը կորսնցնէր. Մամիկոնեանք գա-
հավէժ կը կործանէին, իսկ Կամսարականք մա-
հու օրհասին կը դիմէին արագաքայլ։ Թշնա-
մինները, թէ ներքին եւ թէ արտաքին, հզօր ու
բազմաթիւ, իսկ իրենք անզօր էին այլեւս, մա-
նաւանդ խնամի տոհմին մահաբեր անկումով։
Արտաւազդ Մամիկոնեանի չորս դուստրներէն
մին «եւ զինքն յամուսնութիւն Ջահապի ումեմն
իսմայելացւոյ» (Վարդան, 76), որով Արարա-
ցին Կամսարականաց անմիջական դրացին եւ
մշտական սպառնալիք կը դառնար։ Ջահապ ար-
դէն «յափշտակեալ էր մասն ինչ յԱրշարու-
նեաց, եւ խորհէր տիրել ի ձեռն կնոջն բոլոր
աշխարհին»։ Կամսարականք ճարահատ, եւ գոնէ
իրենց կեանքը ապահովելու համար կը բռնա-
դատուէին Բագրատունիներու յանձնել իրենց
բախտը. կը դիմէին անոնց պաշտպանութեան։
Աշոտ Մսակեր Կամսարականաց անձկութիւնը կը
շահագործէ՝ զանոնք իրենց հողերէն զրկելու
համար։ «Սա գանձագին արար զգաւառն Ար-
շարունեաց յազգէն Կամսարականաց եւ զայրո-
նիսն ի Կոգովտէ յԱրշարունիս փոխեաց» (Ասող.,
106)։ Կամսարականք 783ին կը ծախէին ուրեմն
իրենց հողերը եւ կը դադրէին ըլլալէ «Տեարք
Շիրակայ եւ Արշարունեաց»։ Անոնք Հայաստանի

մէջ չունէին այլեւս ոտք կոխելու տեղ: Բագրատունիք իրենց ծրագիրը իրապէս իրագործածեցին, կը հնար զէնքով ամրապնդել իրենց իրաւունքը, եւ այդ ալ յաջողութեամբ ի գլուխ հանեցին ընդդէմ Ջահապի: «Ջայն (Ջահապի հօղամասը) առին յինքեանս Աշոտ եւ Շապուհ, եւ ելեալք զկողմամբքն Շիրակայ՝ հարին զզօրսն իսմայելի, որ անդ, եւ գրաւեցին յինքեանս զՇիրակ եւ զԱշոցք եւ զգաւառն Տայոց» (Վարդան, 76):

Այն կամսարականը, որ իբր վերջին Տանուտէր ստիպուած էր աղետալի քայլ մը առնել եւ տոհմին դարաւոր հողերը վաճառել, նոյն դէպքը աւանդող պատմագրէն չէ յիշատակուած: Իմ կարծիքով նա կը կոչուէր Ներսեհ (Դ.), որուն կեանքին վերջին դրուագը պահած է Ղեւոնդ, Լթ, 161. 784/785ին՝ Օթման՝ Հայոց եւ Աղուանից նախարարներով Հոնաց ու Խազրաց դէմ կը չուէ. «կոչէ զՏաճատ իշխանն, եւ զսպարապետն Բագարատ, եւ զՆերսեհ կամսարական եւ զայլս ի նախարարացն Հայոց յաւուրն տապախառն ծագման հեփեստեայ հրագագաթան, եւ հարկանէ զբանակ իւր դաշտին, որ կոչէր Քերան, ի դժնդակ եւ յանհանդուրժելի ջերմութեան տապոյ խորշակին: Եւ զբովանդակ աւուրս ամարայնոյ անցուցանէր ի հնոցաձեւ ապառաժին դաշտի: Որում ոչ կարացեալ հանդուրժել նախարարացն Հայոց՝ վախճանէին ի տապախառն օդոցին, որ փտանգեալ բառնայր ի կենաց աշխարհիս. եւ վախ-

ճանի իշխանն Տաճատ եւ սպարապետն Բագարատ եւ Ներսեհն կամսարական եւ այլք ի զօրացն„։

Ներքին ու արտաքին ամէն կարելիութիւն կայ ենթադրելու, որ սոյն Ներսեհը որդի էր Արտաւազդայ, բաժանորդ 750—785 պատահած դէպքերուն եւ իր տոհմին հողերը վաճառելու ստիպուողը։

Ո՞ւր կը փոխադրուին կամսարականք Հայաստանի մէջ հայրենազուրկ ըլլալէ յետոյ։ Պատմութիւնը կը լռէ։ Բաձեանի համեմատ նախ Շաղագոմք, ապա Կարին կը հաստատուին ու հոն կը մնան մինչեւ 1768, եւ նոյն տարին կ'անցնին Կ. Պոլիս։ Արդեօք դա անանուն հեղինակին հնարած կամուրջը չէ՞, կամսարականք եւ Ալաշկերտեանք իրարու կապելու համար։ Կը փորձուիմ հաստատել, երբ նկատի կ'առնում ժամանակագրական, պատմական ու անուանական թանձր սխալներու կոյտը։ Աւելորդ է անոնցմով զբաղիլ։

Սակայն թէ կամսարականք շատ հին ժամանակէ ոտք կոխած են Կ. Պոլիս այդ պատմական իրողութիւն է։ ԺԲ. դարուն Տաւրոսի լեռանց վրայ կը հանդիպինք կամսարականի մը՝ Տղայ Վասիլ, որ Գող Վասլի զինակից ու մարտակից ըլլալէ վերջ 1114ին անոր կը յաջորդէր. բայց 1116ին Բալդուինի նենգութեամբ կը կորսնցնէր իր քաղաքներն եւ կ'ապաստանէր Կ. Պոլիս, ուր մեծապատիւ կը հիւրընկալուէր կայսրէն եւ իշխաններէն (Չամչեան, Գ, 28

33, 38. Ինճիճեան, Հնախ. Բ, 177)։ Բայց այս ալ արդէն շատ հեռու է զմեզ հետաքրքրող Շիրակայ եւ Արշարունեաց տէրերէն։ Ը. դարը կամ աւելի ճիշդ՝ 785 թուականը մեր վերջաքարն է. "Ցայսմ յետէ ոչ եւս գտանի ի գիրս անուն տանն Կամսարականաց եւ Տերանց Շիրակայ, որք ճանաչին... որք մեծարգոյք, ոչ միայն քաջութեամբ եւ բարեպաշտութեամբ, այլ եւ իմաստասիրութեամբ եւ աշխարհասիրութեամբ" (Ալիշան, Շիրակ, 5)։

Կը կցեմ այն Կամսարականներու ճիւղագրութիւնը. որոնցմէ մեծ մասն ստուգիւ, մէկ քանին հաւանօրէն Տանուտէր էին։ Քառակուսի փակագիծը Խորենացին կը մատնանշէ։

---

## ՈՒՂՂԵԼԻ

Էջ 149, 153, 156 "Տէր Մկրտչեան" կարդալ՝ "Տէր Մովսէսեան"։

---


[Վեհսաճան]
[Պերոզամատ]
[Կամսար]
Արշաւիր Ա.
[Ներսեհ]
?
Սպանդարատ [× Արշանոյշ]
[Շաւարշ]
[Գազաւոն]
[Հրահատ]
[Գազաւոն]
?
Արշաւիր Բ. × Վարդանոյշ
Սահակ
Ներսեհ, Հրահատ
?
Գազաւոն
Ջուրակ
?
Իւսերկիոս?
?
Ներսեհ Բ.
Ներսեհ Գ.
× Շուշան
Վահան?
Հրահատ
Գագիկ? Շուշան
Գրիգոր?
Արտաւազդ × Շուշան
Ներսեհ Դ.

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Եր





